պատերազմի բոցերի մեջ շատերը զինվոր դարձան և փորձեցին իրական քայլեր անել հայրենիքի փրկության համար:

Թոթովենցը ևս պիտի գործեր վտանգված հայրենիքի կանչով և հեռավոր Ամերիկայից պիտի վերադառնար Կովկաս՝ զինվորագրվելու կամավորական ջոկատներին: Դա 1915 թվականն էր, հայության ամենաողբերգական տարին: Ամերիկայում զինվորագրման համար ցուցակագրված 15 հազար հայ երիտասարդներից ընդամենը 1200-ին հաջողվեց Կովկաս մեկնելու թույլտվություն ստանալ: Սկսվում է նրա կյանքի մի նոր շրջանը: «Յար» շոգենավով նա հասնում է Ռուսաստան, Անդրկովկաս, որտեղ ականատեսն ու մասնակիցն է դառնում խիստ ճակատագրական իրադարձությունների: Երիտասարդ գրողը ոգեշնչվում և զինվորագրվում է հայ կամավորական շարժմանը: Թոթովենցի հետ, որպես կամավորական զինվորի, 1916 թվականին հանդիպել ու զրուցել է նշանավոր արվեստագետ Վահրամ Փափազյանը: Կամավորական շարժման հորձանուտում էլ ծնվեց մեծ մտերմությունն ու գործակցությունը գրողի և լեգենդար զորականի՝ Անդրանիկի միջև, որը տևեց տարիներ և շատ բովանդակալից եղավ: Հայտնի չէ, թե երբ է եղել նրանց առաջին հանդիպումը, այդ մասին Թոթովենցը չի պատմում ոչ ինքնակենսագրականում, ոչ էլ այնքան հիշարժան «Զօր. Անդրանիկ եւ իր պատերազմները» գեղարվեստական օրագրության էջերում, որը հրատարակվել էր դեռևս 1920 թ. Կ.Պոլսում[3]:

Զորավար Անդրանիկը դառնում է երիտասարդ Թոթովենցի կյանքի և գրականության, նրա ճակատագրի ուղեկիցը՝ մինչև իր կյանքի ավարտը (թեև հայտնի և հասկանալի պատճառներով խորապես թաքցնում է այդ իրողությունը ստալինյան բռնաճնշումների տարիներին հեղինակած գործերում):

Զորավարն իր հերթին մեծ վստահությամբ է վերաբերվում գիտուն և ազնվակորով բարեկամին: Եկավ պահը և Անդրանիկը երիտասարդ, տաղանդաշատ գրողին վստահեց մեծ կարևորության ու պատասխանատվության գործը:

Դա «Հայաստան» օրաթերթի հիմնադրումն էր, որի նախաձեռնողն ու գործադիր պատասխանատուն Անդրանիկն էր, և որին հոգեպես ու բարոյապես զորակցում էր Հովհաննես Թումանյանը:

### *Դիտարկումներ պարբերականի ուսումնասիրման պատմությունից*

«Հայաստան» պարբերականի դերակատարության շուրջ նախորդ տասնամյակներին հնչել են հակասական, իրարամերժ կարծիքներ: Այսպես, 1930-

---

[3] **Մարմարեան** 1920:

ական թվականներին մարքսիստ Արտաշես Կարինյանը սույն կերպ է արտահայտվել. «Թոթովենցը եղել է խմբապետ, հայտնի շովինիստ, ջարդարար Անդրանիկ փաշայի համհարզը և «Հայաստան» թերթուկի խմբագիրը»[4]:

Բայց նույն Խորհրդային Հայաստանում, արդեն իսկ 1970–80ական թթ. հնչել են բոլորովին այլ տեսակետներ: Այսպես, Թոթովենցի երկերի երեք հատորով ժողովածուի առաջին գրքում իմաստավորվում է գրողի կատարած գործը. «Նրա խմբագրած «Հայաստան» օրաթերթը աշխատանք տարավ Կովկասում ապաստան գտած արևմտահայ գաղթականների, փախստականների ու որբերի հոգսերն ու ցավերը թեթևացնելու ուղղությամբ: Օրաթերթը հրատարակվում էր ժողովրդական նվիրատվություններով: Բոլորին հայտնի է, որ դա Զորավար Անդրանիկի օրաթերթն էր և բոլորը դիմում էին նրան: Անհնար է առանց հուզումի կարդալ «Հայաստան» օրաթերթը, որի էջերում տեղ գտած նյութերի մեծ մասը Թոթովենցի գրչին է պատկանում: Ժողովրդի ցավով տապակվող սրտի արյունով են գրված այդ նյութերը»[5]:

Անվանի պատմաբան Ծ. Աղայանը բարձր գնահատելով թերթի առաքելությունը, հետևյալ եզրահանգումն է կատարել. «Պետք է նկատել, որ «Հայաստան» թերթով առաջին անգամ լայնորեն քննարկվում էին արևմտահայության ճակատագրի հարցերը, արևելահայ հասարակական շրջանների ուշադրությանն էին հանձնվում նրա փրկության և գոյության հրատապ խնդիրները, փորձ էր արվում կոնկրետ քայլեր անել հայ ժողովրդի երկու հատվածների միասնության հաստատման և ամրապնդման, ինչպես նաև միասնաբար գործելու ուղղությամբ»[6]:

«Հայաստանը» արագ նվաճեց ընթերցողների հարգանքն ու աջակցությունը: Հարյուրավոր վկայություններից մեջբերենք մեկ-երկուսը. «Արտասահմանեան հայ թերթերէն մեծ ոգևորութեամբ կընդունուի «Հայաստան»-ը: Չիկայ թերթ ով ողջոյնի տաք խօսքեր չուղղէ «Հայաստան»-ի գլխաւոր նախաձեռնող Անդրանիկին»[7]: Իսկ էրգրում հաստատված վերապրողները էրզրումից հետևյալ կերպ էին արտահայտվում. «Անհուն ուրախութիւնս կը յայտնեմ «Հայաստան»-ի միակ մեր թերթին վերսկսելուն, կարժէ մեր ջանքերը սպաս դնել անոր գոյութիւնը յաւերժացնելուն, զի այն է միայն մեր վիշտերու արտա-

---

[4] Գրական թերթ, 1936, թիվ 29:

[5] **Թոթովենց** 1988, 7:

[6] **Աղայան** 1994, 579:

[7] «Հայաստան», 1917, թիվ 125:

հայտիչը և դարդերու վրայ խօսող լեզուն»[8]: «Հայաստան» պարբերականը ձեռք բերեց համաժողովրդական և համազգային բովանդակություն ու հնչողություն և շաղկապող օղակ դարձավ ազգի տարբեր հատվածների միջև:

Թոթովենցի կյանքի և գործի մասին ուշագրավ աշխատության հեղինակ է բանասիրական գիտությունների դոկտոր Ն. Ադալյանը, որն «Հայաստանի» գործունեությունը արժևորում է հետևյալ կերպ. «Բազմազան էր թերթի թեմատիկան, բովանդակությունը՝ հարուստ և կարևոր: Ընթացիկ խնդիրների ու ամենօրյա լրատվության կողքին լուսաբանվում էին ներքին և արտաքին քաղաքականության շարժումները, պատերազմի ընթացքը, ազգի ներկան ու հնարավոր հեռանկարները: Գաղթականության վիճակը գտնվում էր սևեռուն ուշադրության կենտրոնում»[9]: Ընդհանուր առմամբ, նա շատ բարձր է գնահատում պարբերականի ունեցած դերակատարությունը հայոց ազգային քաղաքական կյանքի հոլովույթում:

### ***Թերթի գաղափարական ուղղվածությունը***

Լրագիր հրատարակելու հոգսերով Զորավար Անդրանիկը մտահոգ էր վաղուց և իր անհանգստությունները անձնական նամակներով փոխանցել էր արևմտահայ մի քանի մտավորականների: Այսպես, 1917 թ. հունվարի 8-ին Թիֆլիսից Ե. Քաջունուն հղված նամակում նշվում է, որ ձևավորվել է թերթի խմբագրական խորհուրդը և որին անդամակցելու համար հրավիրվում է վերջինս:

Նույն ոգով զորավարը հունվարի 19-ին նամակ է հղում Կարինում վերահաստատված Տ. Լյուլեճյանին, հույս հայտնելով, որ «ազնիւ պրոֆեսոր»ը (իր բնութագրումն է) կմիանա իրենց աշխատանքներին:

1917 թ. մարտի 15-ին Թիֆլիսում հրատարակվում է մի ազդաթերթիկ, որում զետեղված Անդրանիկի կոչում ասված էր, որ շուտով Թիֆլիսում ասպարեզ կելնի մի լրագիր, որն ամբողջովին զբաղվելու է կիսաջինջ եղած արևմտահայության կարիքներով: Այդ նպատակով հրավեր էր ուղարկվում բոլոր նրանց, ովքեր հավատալով վերաշինվող հայրենիքի հեռանկարին՝ սույն գործին բերելու էին իրենց նյութական և բարոյական աջակցությունը:

Երկար որոնումներից հետո «Հայաստանի» խմբագրական մարմինը կազմավորվեց հետևյալ պատկառելի գործիչներով. Արտակ Դարբինյան, Վահան Թոթովենց, Ներսես Դշխոյան, Հովսեփ Պարսամյան, բժ. Հայկ Բոնա-

---

[8] «Հայաստան», 1917, թիվ 125:

[9] **Ադալյան** 1994, 70:

պարտյան, Հակոբ Տեր-Զաքարյան, Կոստի Մանուկյան, Հրանտ Հանեսյան, Սուրեն Մելիքյան, Լևոն Թութունջյան, Պետրոս Տեփոյան, Եղիշե և Եզնիկ Քաջունիներ, Սարգիս Խաչատրյան: Թերթը տպագրվում էր «Քարթլի» տպարանում, իսկ խմբագրությունը տեղավորված էր Թիֆլիս քաղաքի Բեյբուտովսկայա փողոցի թիվ 30 տանը:

Թերթի առաջին համարը լույս տեսավ 1917 թ. ապրիլի 16-ին, Թիֆլիսում: Ամենաուշագրավ ու բովանդակալից հրապարակումները պատկանում էին Ամենայն հայոց բանաստեղծին և Ամենայն հայոց զորավարին: Խմբագիրը հոգ էր տարել, որ թերթի առաջին իսկ համարը հատուկ առաքելությամբ ու հիշարժան հանդիսավորությամբ աչքի ընկնի: Այսպես էլ եղավ: Հայ սերունդների հոգևոր տեսադաշտում տասնամյակներ և արդեն հարյուր տարի շարունակ «Հայաստան» պարբերականն է, որի առաջին համարը բացվում է Հովհաննես Թումանյանի «Հայաստանը պէտք է խօսի» և Զորավար Անդրանիկի «Հայրենիքի վերաշինութիւնը» ծրագրային հոդվածներով:

Ամենևին պատահական չէր, որ նորաստեղծ պարբերականի անդրանիկ համարում կողք-կողքի հանդես էին գալիս ժամանակի երկու նշանավոր ու երևելի հայ անհատականությունները: Միայն նրանք կարող էին միավորել ու համախմբել պառակտված ու բզկտված հայությանը: Եվ նրանց խոսքը հենց այդ նպատակակետին էր ուղղված: Երկու հրապարակումներում էլ խորքային, մեծ ու տարողունակ էր ասելիքը: Թումանյանը նշում է, որ մինչ օրս չենք ճանաչել մեր երկիրն ու նրա ցավերը և այն միշտ լռության է եղել դատապարտված ակամա, բավական է: Հայաստանը պետք է խոսի. «Եւ պէտք է խօսի էնքան լուրջ զգաստ, ինչքան լուրջ ու զգաստ է լինելու ամենից մեծ վշտաւորն ու ամենից շատ վտանգվածը ժողովուրդների մէջ, այլև էնքան համարձակ ու բաց ճակատով կարող է խօսել մի ժողովուրդ, որ ապրել է մարդկային լավագոյն ձգտումներով և ամեն ինչ տվել է ու կտա ազատ կեանքի համար»[10]:

Նույնքան կարևոր և ուղենշային էր Զորավարի խոսքը, որն առնչվում էր ավերակված հայրենիքի վերաշինության խնդիրներին: Զորավարը ամենուր սփռված հարյուր հազարավոր գաղթականներին կոչ էր անում որպես հավաքական ուժ վերադառնալ հայրենիք և վերաշինել ավերված օջախները: Վերաշինության գործը նա համարում էր ողջ հայության սրբազան պարտականությունը. «Մեր արեան հարցը արդեն դրուած է ազատութեան և համաշխարհային խաղաղութեան համար պատերազմող պետութեանց դիւանագի-

[10] «Հայաստան», 1917, թիվ 1:

տական սեղանի վրայ…Արեան հարցի հետ և այնքան խոշոր՝ դրուած է մեր ժողովրդի առջև և վերաշինության հարցը, որուն պետք է լծուին մեր բոլոր ոյժերը»[11]:

Զորավարն այնքան համոզված էր, որ հայ ժողովուրդն անպայման տեր է կանգնելու իր պատմական հայրենիքին: «Հայաստան» լրագրի առաջին իսկ համարից սկսած Անդրանիկի կերպարը, անունը, շունչն ու ոգին մշտապես ներկա է նրա էջերում: Նույն անդրանիկ համարում «Ռազմիկ» ստորագրությամբ հոդվածագիրը այս կերպ է ողջունում թերթի ծնունդը. «Ազատ Ռուսաստանի մէջ, ահա լոյս կը տեսնէ «Հայաստան»: Մեր ցեղին ներկայի մեծ հերոսը, պաշտելի Անդրանիկը, Հայաստանի արիւնլուայ, բզիկ-բզիկ դրօշակն իր ձեռքին կանգնած է հպարտ ու անպարտելի»[12]: Իսկ Հակոբ Տեր-Հարությունյանը մտավորականի իր հուզիչ խոսքն ամփոփում էր այսպես. «Քո էջերէն պիտի խօսի հայ ժողովուրդը»[13]:

Պարբերականի ծննդյան համարը, իրոք հաջողվել էր (ինչպես և հետագա բոլոր համարները) և դրանում ամենամեծ ներդրումը խմբագրինն էր:

Հենց «Հայաստանը» խմբագրելու ժամանակ ի հայտ եկան Վահան Թոթովենցի՝ որպես ստեղծագործական անհատականության, ճշմարիտ տաղանդի դրսևորման լավագույն ձևերը:

Իրոք, Թոթովենցի խմբագրած «Հայաստանը» դարձավ այն լրագիրը, որի էջերից խոսեց ողջ հայ ժողովուրդը՝ հանձինս նրա լավագույն ներկայացուցիչների:

Պարբերականի հայացքն ուղղված էր ժողովրդի ունեցած մեծ ու փոքր խնդիրներին ու մտահոգություններին, որոնք այս կամ այն կերպ արտացոլվում էին նրա էջերում:

Այնուամենայնիվ, թերթի գլխավոր մտահոգությունը մնում էին արևմտահայ գաղթականության ծանր կացությանն առնչվող իրավիճակը և Արևմտյան Հայաստանի վերաշինության խնդիրը:

Զորավար Անդրանիկը երկրի վերաշինության գործում կոչ էր անում մոռանալ երեկվա հակասություններն ու գժտությունները և մտահոգվել վերապրողների փրկության տեսլականով. «Անցեալի համար շատ բաներ ունինք ըսելու, բայց անցնենք: Ըլլանք իմաստուն գէթ ասկէ հետո: *Մտածենք միայն փրկելու վերապրողները, որպեսզի վաղը միւս օրը նոյն այդ հայրենիքին մէջ*

---

[11] «Հայաստան», 1917, թիվ 1:

[12] «Հայաստան», 1917, թիվ 1:

[13] «Հայաստան», 1917, թիվ 1:

*կարենանք վերակազմել հայ հասարակակարգը, հայ իրականութիւնը՝ իր պապմական միսիօնով և ձգտումներով» (ընդգծումը իմն է – Ա.Կ.)*[14]:

Եվ «Հայաստանը» բարձր ձայնով ու հետևողականորեն խոսեց այդ հիմնահարցերի շուրջ, վերհանեց, բացահայտեց քողարկված մտահոգություններն ու տագնապները, մտրակեց ազգային մարմիններին թույլ տված սխալների, վրիպումների ու դանդաղկոտության համար: Օրաթերթը արձագանքում էր արևմտահայության կյանքին և Արևմտահայաստանի ճակատագրին վերաբերող որևէ կարևոր քայլի և իրադարձության: Եվ, իհարկե, ամենից կարևորն այն շունչն էր ու այն ոգին, որ թերթը փոխանցում էր իր բազմահազար հետևորդներին: Այդ մասին սպառիչ պատկերացում է տալիս «Սուրբ Հայաստան» վերնագրով հուզումնալից ակնարկը, որը պատկանում է Թոթովենցի գրչին. «Բանաստեղծութիւնը՝ արդարև, չի զօրեր սովեալին հաց և անտունիին երդիկ մը տալու: Բայց այն աւելին կուտայ: Ան կուտայ սիրտ՝ ցաւերուն տոկալու, ան կուտայ հոգի՝ աւերակը նորէն պարտէզի փոխելու և մեռած կարծուած ազգը արևուն տակ ոտքի հանելու: Ազգի մը բուն մահը կը սկսի՝ երբ ինք իր վրայ հաւատքը մեռնի իր մէջ»[15]:

Հայ ազգային կյանքի բոլոր կարևոր դեպքերն ու իրադարձությունները անդրադարձ էին գտնում օրաթերթի էջերում՝ անհրաժեշտ վերաբերմունքի դրսևորումներով: Հատկապես դա վերաբերվում է արևմտահայության և Արևմտյան Հայաստանի ճակատագրին առնչվող զարգացումներին: Հայաստանին նվիրված խոսք ու ներբողներ էին հնչում թերթի շատ համարներում: Այսպես, 1917 թ. օգոստոսի 22-ին թերթի առաջին էջում դրված էր Ֆրանսիացի տաղանդավոր բանաստեղծ, հրապարակագիր Էմիլ Փինեյի «Ինչու կը սիրեմ Հայաստանը» վերնագրով հուզախռով ակնարկը, որում արտացոլված է մարտիրոսագրված հայ ժողովրդի հոգու վեհությունը. «Ինչ որ կը տեսնեմ Ձեր իւրաքանչիւրիդ շուրջը, իւրաքանչիւրիդ մէջ, ամբողջ ժողովուրդ մըն է, վիրաւոր ծանրագոյն շղթաներով, արիւնլուայ ամենէն ծանր լուծերու տակ, եռանդագին հոգեպէս, յարատեւօրէն կանգնած միշտ, բոլոր տառապանքներուն, բոլոր բռնութիւններուն, բոլոր խորամանկութեանց, բոլոր տմարդութեանց հանդէպ…աշխարհին ցույց տալով իր հոգւոյն անպարտելի հաւատքը իր վերածնունդի ժամուն համար»[16]: Հայությանը ոգևորող այս կարգի նյութեր հաճախ էին տպագրվում «Հայաստանի» էջերում:

---

[14] «Հայաստան», 1917, թիվ 1:

[15] «Հայաստան», 1917, թիվ 99:

[16] «Հայաստան», 1917, թիվ 100:

Թոթովենցին հաջողվեց ստեղծել, իրոք, համահայկական չափանիշերով մի լրագիր, որը մշտապես արծարծում և արմատավորում էր հայ ժողովրդի բոլոր հատվածների սերտ համերաշխության ու միասնականության գաղափարը:

Օրաթերթի խմբագիրն այդ գաղափարը դիտարկում էր իր գրած գրեթե բոլոր կարևոր հրապարակներում և խմբագրական հոդվածներում: «Մեր հանգանակը» վերնագրով հրապարակումը լավագույնս արտացոլում է նրա գաղափարական կողմնորոշումը. «Հայաստան»-ը պիտի ըլլայ այն հանգրուանը ուր պիտի միանան և իրարու ձեռք սեղմեն բոլոր անոնք, որոնք, մոռցած քաղաքական ամէն դաւանանք կը միտին ստեղծելու հայ ազգային ազատութիւնը, ըլլան անոնք արևելահայեր թէ՝ արևմտահայեր»[18]: Հստակ ընդգծվում է, որ սույն հանգանակը իր տրամաբանության մեջ իրականությանը այնքան համապատասխան է, խորը և դյուրիհասկանալի, որ հարկ չկա կետ առ կետ այն խորացնելու: Հետևաբար, երբ «Մենք կը խօսինք համերաշխութեան և քաղաքական վայրկեանի ըմբռնումի մասին, մենք կը հասկնանք անվերապահ, լուրջ և երաշխաւորուած անկեղծութիւն մը, որ վեր ըլլայ ամէն տարակոյսէ ու երերումէ և բղխի մեր վիճակի յստակ ըմբռնումէն»[17]:

***Եզրակացություն***

Հայոց պատմության ծանրագույն ժամանակաշրջանում, երբ Արևմտյան Հայաստանում իրագործվել էր հայ ժողովրդի բնաջնջումը և, երբ թուրք ջարդարարները նախապատրաստվում էին հարձակում սկսել արևելահայության վրա, հայ ազգային ազատագրական շարժման անվանի գործիչ Անդրանիկ Օզանյանը մեծանուն բանաստեղծ Հովհաննես Թումանյանի բարոյական բարձր աջակցությամբ նախաձեռնեց «Հայաստան» պարբերականի հրատարակությունը: Օրաթերթի խմբագիր, երիտասարդ տաղանդավոր գրող Վահան Թոթովենցը փայլուն կերպով կատարեց իր առջև դրված պարտականություններն ու պարտավորությունները: «Հայաստանը» խոսեց ժողովրդի հոգու և մտքի թրթռուն ելևէջներով, խոսեց արևմտահայության, նրա կենդանի և նահատակ հատվածների անունից:

## ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ

**Ադալյան Ն.** 1994, Թոթովենց, Երևան, հեղ. հր., 367 էջ:

[17] «Հայաստան», 1917, թիվ 111:

**Աղայան Ծ.** 1994, Անդրանիկ դարաշրջան, դեպքեր, դեմքեր, Երևան, ՀԲՀ հրատ., 814 էջ:

ԳԱԹ, Վ. Թոթովենցի ֆոնդ, թիվ 174:

«Գրական թերթ» 1936, թիվ 29:

**Թոթովենց Վ.** 1988, Երկեր երեք գրքով, գիրք 1, Երևան, «Սովետական գրող» հրատ., 536 էջ:

«Հայաստան» 1917, 16 ապրիլի, թիվ 1:

«Հայաստան» 1917, թիվ 100:

«Հայաստան» 1917, թիվ 111:

«Հայաստան» 1917, թիվ 125:

«Հայաստան» 1917, թիվ 99:

**Մարմարյան Արսեն** 1920, Զօր.Անդրանիկ եւ իր պատերազմները, Կ.Պոլիս, տպ. Կիւթենպէրկ, 407 էջ:

**Ахумян Т.** 1966, Литературные статьи и воспомонание, Ереван, «Айастан», 386 с.

## ВААН ТОТОВЕНЦ, РЕДАКТОР ГАЗЕТЫ «АЙАСТАН»

КАРАПЕТЯН А.

### Резюме

***Ключевые слова:*** Западная Армения, газета «Айастан», добровольческое движение, Зоравар Андраник, вилайет Харберда, беженцы, Ованес Туманян.

Ваан Тотовенц – один из известных армянских писателей начала 20 века. Движимый патриотическими чувствами, он стал участником армянского добровольческого движения. Встреча и дружба с Зораваром Андраником стали поворотным моментом в жизни писателя. В апреле 1917 года вышел первый номер газеты «Айастан», редактором которой был назначен Тотовенц. Работа на посту главного редактора выявила новые грани его таланта. Газета стала рупором злободневных проблем армянского народа. Однако самым обсуждаемым вопросом на страницах этого издания был вопрос переживших Геноцид западных армян и возвращение исторической родины – Западной Армении.

# VAHAN TOTOVENTS, EDITOR OF THE «NEWSPAPER» HAYASTAN

KARAPETYAN A.

## Summary

***Key words:*** Western Armenia, Hayastan newspaper, volunteer movement, Zoravar Andranik, Vilayet of Kharbert, refugees, Hovhannes Tumanyan.

Vahan Totovents is one of the famous Armenian writers and orators of the early 20th century. He joins the Armenian volunteer movement out of patriotic motives. The meeting and closeness with Zoravar Andranik is a turning point in the life of the writer. In April 1917, the Hayastan newspaper was published, and Totovents was appointed as its editor. His work as an editor of a daily newspaper revealed the new horizons of his talent. The newspaper became a mouthpiece of Armenians' topical daily problems.

However, the main concern of the newspaper remained the situation associated with the plight of hundreds of thousands of Western Armenians who survived the genocide, their return to their historical Homeland - Western Armenia.

## ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔԱՂԱՔԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ
## PHILOSOPHY AND POLITICS

**ՄԵԼԱՆՅԱ ԴԱՎԹՅԱՆ***
*Քաղաքական գիտությունների թեկնածու,*
*ՀՀ Ոստիկանության կրթահամալիր, դոցենտ*
melania.davtyan@mail.ru
DOI: 10.54503/1829-4073-2022.3.100-115

# ԴԱՎԻԹ ԱՆՀԱՂԹԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՈՒ ԳՈՐԾՆԱԿԱՆԻ ՍԱՀՄԱՆՈՒՄՆԵՐԸ

***Բանալի բառեր՝*** Դավիթ Անհաղթ, քաղաքագիտության փիլիսոփայություն, քաղաքականության փիլիսոփայություն, քաղաքական տեսություն, քաղաքական պրակտիկա, քաղաքական բնագիտություն, քաղաքական աստվածաբանություն

***Ներածություն***

Դավիթ Անհաղթի քաղաքական փիլիսոփայության սահմանումները և նրանց տեսական ու գործնական մասերի բաժանումը հետազոտության նոր ասպարեզ է բացում հայ քաղաքական գիտության մեջ:

Դավիթ Անհաղթն իր փիլիսոփայությունը բաժանում է տեսական և գործնական մասերի: Նրա սահմանումների մի մասը վերաբերում է տեսական, մի մասը՝ գործնական, իսկ մի մասն էլ՝ և՛ տեսական, և՛ գործնական փիլիսոփայությանը:

* *Հոդվածը ներկայացվել է 05.02.22, գրախոսվել է 26.03.22, ընդունվել է տպագրության 01.12.22:*

«Եվ պետք է հենց այստեղ էլ ասել,- գրում է Դավիթ Անհաղթը,- որ փիլիսոփայությունը, երկու տեսակ է՝ տեսական և գործնական, ունի վեց սահմանում, դրանցից մի քանիսը վերաբերում են տեսական իմաստասիրության, մի քանիսը գործնական, որոշ սահմանումներ էլ՝ երկուսի: Այսպես, *ըստ ենթակայի (մերձավոր և հեռավոր – Մ.Դ.)*, երկու սահմանումներ, որոնք ասում են, թե փիլիսոփայությունը գիտություն է գոյերի մասին, որպես այդպիսին, և փիլիսոփայությունը գիտություն է աստվածային և մարդկային իրողությունների մասին, և մեկ սահմանում *ըստ առավելության*, որն ասում է, թե փիլիսոփայությունը արվեստների արվեստն է և գիտությունների գիտությունը, վերաբերում են փիլիսոփայության տեսական մասին: Իսկ մեկ սահմանում, ըստ *մերձավոր նպատակի*, որը հայտնում է, թե փիլիսոփայությունը խորհրդածություն է մահվան մասին, և մյուս սահմանումը *ըստ ստուգաբանության*, որը հայտնում է, թե իմաստասիրությունը սեր է դեպի իմաստությունը, վերաբերում են (փիլիսոփայության) գործնական մասին: Իսկ այն սահմանումը, որ կառուցված է ըստ *հեռավոր նպատակի*, որի համաձայն փիլիսոփայությունը Աստծուն նմանվելն է ըստ մարդկային կարողության, վերաբերում է երկու մասերին էլ»[1]:

***Ըստ Դավիթ Անհաղթի նորպլատոնական փիլիսոփայության սկզբունքի՝ առարկայական գոյը գոյություն ունի երկու ենթակայով և երկու նպատակով՝ առավելությամբ և ստուգաբանությամբ[2]:***

Քաղաքական փիլիսոփայությունը, որը նաև հայտնի է որպես քաղաքական տեսություն, փիլիսոփայության և քաղաքագիտության ճյուղ է, որն ուսումնասիրում է քաղաքականությունը, քաղաքական արժեքները, քաղաքական իրականության էությունը և քաղաքական վերլուծության իմացական նախադրյալներին վերաբերող գաղափարները[3]:

Քանի որ Դավիթ Անհաղթը իր «քաղաքական փիլիսոփայությունը» բաժանում է տեսական ու գործնական մասերի, ապա մենք պայմանականորեն կարող ենք տեսական մասը անվանել «քաղաքագիտության փիլիսոփայություն», իսկ գործնական մասը՝ «քաղաքականության փիլիսոփայություն»:

***Քաղաքագիտության փիլիսոփայությունը*** վերաբերում է քաղաքական գոյերին, նրանց միջև հարաբերությունների ճանաչմանը՝ իմացությանը, քաղաքական հասկացությունների ձևավորմանն ու հետազոտմանը՝ որպես քաղաքական տեսություն:

---

[1] **Դավիթ Անհաղթ** 1980, 125:

[2] Տե՛ս **Դավիթ Անհաղթ** 1980, 64:

[3] Տե՛ս https://ru.wikipedia.org/wiki/Политическая_философия հասանելի է 16.05.2022:

Գիտական տեսությունը հունարեն նշանակում է. նկատառում, հետազոտություն, վարդապետություն, ուսմունք, գիտելիքների համակարգ, որը ներառում և բացատրում է երևույթների որոշակի խումբը և նրանց միջև հայտնաբերված կանոնավոր կապերը՝ որպես **մեկ միավոր սկզբունք**[4]:

Այն ներկայացնում է հետազոտվող միավորի անհրաժեշտ կողմերը, կապերը, նրա էության և օրինաչափությունների վերաբերյալ համակարգված գիտելիքները: Տեսականորեն ուսումնասիրվող միավորի օրինաչափությունների մասին գիտելիքները տրամաբանորեն համահունչ են և հիմնված են մեկ միասնական սկզբունքի վրա:

Ըստ համակարգչային հանրագիտարանի, տեսությունը գործում է որպես սինթետիկ գիտելիքների տեղեկատվական մոդել, որի շրջանակներում առանձին հասկացություններ, վարկածներ և օրենքներ կորցնում են իրենց ինքնուրույնությունը և դառնում ինտեգրալ համակարգի տարրեր: Տեսականորեն որոշ դատողություններ բխում են այլ դատողություններից՝ հիմնվելով գործնական ապացույցների, կամ տրամաբանական կանոններով՝ եզրակացությունների վրա: Տեսությունները ձևակերպվում, մշակվում և փորձարկվում են ըստ գիտական մեթոդի: Տեսությանը նախորդում է վարկածը: Տեսությունը կամ տեսությունները, որոնք միավորվում են, դառնում են վարդապետություն՝ ուսմունք[5]:

Տեսության կարևոր հատկությունը կանխատեսելու կարողությունն է, որի հիման վրա կատարվում է վերիֆիկացիան՝ տեսության ստուգումը գործնականում:

Դավիթ Անհաղթի քաղաքագիտության փիլիսոփայությունը, որպես տեսություն, պարունակում է երեք տիպի քաղաքագիտություն. երկուսն *ըստ ենթակայի*, մեկն *ըստ առավելության*: Արդյունքում կունենանք մերձավոր քաղաքագիտության, հեռավոր քաղաքագիտության, ու նաև առավելագույն քաղաքագիտության մակարդակներ քաղաքական գիտությունների ու արվեստների կողքին, որոնցից յուրաքանչյուրն ունի, ըստ նրա, իր հետևյալ սահմանումը.

– քաղաքագիտության փիլիսոփայությունը, ըստ *մերձավոր քաղաքագիտության,* գիտություն է քաղաքական գոյերի մասին, որպես այդպիսին,

---

[4] Տե՛ս **Копнин** 1974, 568.

[5] Տե՛ս https://ru.wikipedia.org/wiki/Теория հասանելի է 16.05.2022:

– քաղաքագիտության փիլիսոփայությունը, *ըստ հեռավոր քաղաքագիտության,* գիտություն է աստվածային և մարդկային քաղաքական իրողությունների մասին,

– քաղաքագիտության փիլիսոփայությունը, *ըստ առավելության*, քաղաքական արվեստների արվեստն է[6], քաղաքական գիտությունների գիտությունը[7]:

*Այսինքն, քաղաքական գոյերն ու նրանց միջև հարաբերությունները <u>ճանաչելը</u> վերաբերում է քաղաքական տեսությանը:*

Եվ պետք է գիտենալ, գրում է Դավիթ Անհաղթը, որ այլ կերպ են ստորաբաժանում տեսությունը Պլատոնը, և այլ կերպ՝ Արիստոտելը: Այսպես, Պլատոնը ստորաբաժանում է տեսությունը բնագիտության և աստվածաբանության, իսկ Արիտոտելը՝ բնագիտության, մաթեմատիկայի և աստվածաբանության[8]: Բնագիտությունը հարկավոր է այն բաների համար, որոնք առարկայորեն և մտովի ունեն նյութական գոյություն, իսկ մաթեմատիկան՝ այն բաների համար, որոնք առարկայորեն ունեն նյութական գոյություն և մտովի՝ աննյութ: Իսկ աստվածաբանությունը հարկավոր է այն բաների համար, որոնք առարկայորեն և մտովի աննյութ են[9]: Այսինքն, բոլոր քաղաքական գոյերը կարելի է ճանաչել.

– *քաղաքական բնագիտությամբ,*

– *քաղաքական մաթեմատիկայով և*

– *քաղաքական աստվածաբանությամբ:*

Ըստ մերձավոր քաղաքական տեսության առաջին սահմանման, քաղաքագիտության փիլիսոփայությունը, գիտություն է քաղաքական գոյերի մասին, և, որպես այդպիսին, վերաբերում է այն գոյերին, որոնք առարկայորեն և մտովի ունեն նյութական գոյություն և ճանաչվում են բնական գիտությունների կողմից:

Օրինակ «ազգը» որպես քաղաքական գոյ, այսօր ենթարկվում է բնագիտական ճանաչման՝ հատկապես կենսաբանական, գենետիկական, մարդա-

---

[6] Քաղաքական արվեստներից են՝ քաղաքական փաստարկումը, քաղաքական բանավեճը, քաղաքական հրապարակախոսությունը, ճարտասանությունը, հռետորությունը և այլն:

[7] Ժամանակակից քաղաքական գիտությունները բազմաթիվ են՝ էթնոքաղաքագիտություն, համեմատական քաղաքագիտություն, կիրառական քաղաքագիտություն, հայրենական քաղաքագիտություն և այլն:

[8] Տե՛ս **Դավիթ Անհաղթ** 1980, 104:

[9] Տե՛ս **Դավիթ Անհաղթ** 1980, 105:

բանական, գանգաբանական և այլ գիտությունների կողմից, որոնցից ստացված գիտելիքները քաղաքագիտական նյութ են դառնում և կիրառվում են քաղաքական նպատակներով: Այստեղ «ազգը» առարկայորեն և մտովի ունի նյութական գոյություն, քանի որ ենթակա է ճանաչման՝ փորձնական գիտությունների կողմից:

Օրինակ, ծագումով ռուս, բելգիացի ֆիզիկոս Պրիգոժինը հենվելով բնագիտությունների՝ ֆիզիկայի, քիմիայի և այլ օրինաչափությունների վրա, համեմատում է հասարակական երևույթների, իրադարձությունների հետ, «փորձում է կամուրջներ կառուցել բնական և հումանիտար գիտությունների միջև»[10]:

Կարելի է ասել, որ եթե պատմությունը չկեղծվի ինչ որ սուբյեկտների կողմից, ապա պատմական դեպքերն ու հասարակական հարաբերությունները կբացատրվեն բնագիտական օրինաչափություններով:

Քաղաքական տեսությանը վերաբերող մյուս սահմանումը՝ ըստ հեռավոր քաղաքական տեսության, հետևյալն է. ըստ Դավիթ Անհաղթի, քաղաքագիտության փիլիսոփայությունը գիտություն է աստվածային և մարդկային քաղաքական իրողությունների մասին, որը վերաբերում է *քաղաքական աստվածաբանությանը*, որի միջոցով ճանաչվում են այն քաղաքական գոյերը, որոնք ունեն առարկայորեն և մտովի աննյութ գոյություն. «Ծառայելով մարդկային կարիքներին, նա չի արհամարհում աստվածային իրողությունները, և ծառայելով աստվածային բաներին, նա չի անտեսում մարդկային իրողությունները, այլ հետևում և աշակերտում է աստվածային բաներին, իսկ մարդկային գործերը կարգավորում է և կատարելագործում»:

Եթե ազգը փորձենք ճանաչել քաղաքական աստվածաբանության մեթոդով, ապա ազգը կդրսևորի առարկայորեն և մտովի աննյութ գոյությունը՝ իր առասպելներով, պատումներով, հեքիաթներով, առհասարակ գաղափարախոսությամբ, որոնցով նա կարգավորում և կատարելագործում է իր աստվածային էությունը:

Համացանցային հանրագիտարանում քաղաքական աստվածաբանությունը ներկայացվում է որպես քաղաքական մտքի ուղղություն՝ նվիրված աստվածաբանական հասկացությունների և քաղաքականության միջև հարաբերությունների ուսումնասիրությանը[11]:

---

[10] https://www.nkj.ru/archive/articles/4949/ հասանելի է 16.05.2022:

[11] http://wikipedia.ru.nina.az/wiki/Политическая_теология հասանելի է 16.05.2022:

Օրինակ, Հայոց ազգի քաղաքական կյանքը կարգավորելու և կատարելագործելու նպատակով Մովսես Խորենացին իր պատմությունը գրել է քաղաքական աստվածաբանության ուղղություններից մեկի՝ նորպլատոնականության ուսմունքի համաձայն: Իսկ նորպլատոնական ուսմունքին բնորոշ է աշխարհի **աստիճանակարգված կառուցվածքը**, որը ծնվել է այնկողմնային սկզբնաղբյուրից, այն հոգու «վերածննդի», *Աստծու հետ միանալու գործնական ուղիների մասին ուսմունքն է*[12]**:** Աշխարհի զարգացման ընթացքը կարելի է ճանաչել կենդանի իրականության եռաստիճան զարգացման աստվածաբանական օրենքով[13]:

Եռամիասնության մեթոդի խորենացիական կիրառման դասական օրինակը, թերևս, հայոց պատմության հանրահայտ պարբերացումն է «Ծննդաբանության», «Միջակ պատմության», և «Ավարտաբանության», որով, ըստ նորպլատոնականության վերածնման եռաստիճան օրենքի, նորից սկիզբ է դրվում Հայոց մեծերի ծննդաբանությանը:

- Քաղաքական տեսությանը վերաբերող Անհաղթի վերջին սահմանումը (քաղաքագիտության փիլիսոփայությունը քաղաքական արվեստների արվեստն է, քաղաքական գիտությունների գիտությունը). վերաբերում է *քաղաքական մաթեմատիկային*, որի միջոցով քաղաքական գոյը ճանաչվում է որպես առարկայորեն նյութական և մտովի՝ աննյութ գոյություն:

Այս կապակցությամբ Անհաղթը գրում է, որ մաթեմատիկան գոյանում է քանակի շնորհիվ, և կա նրա չորս տեսակ՝ թվաբանություն, երաժշտություն, երկրաչափություն և աստղաբաշխություն[14]: Սա նշանակում է, որ քաղաքական այն գոյերը, որոնք առարկայորեն նյութական են և մտովի՝ աննյութ, հետազոտվում ու ճանաչվում են քաղաքական մաթեմատիկայով՝ իր ենթամասերով:

Նկատելի է, որ մաթեմատիկայի չորս տեսակները վերաբերում են ազատական արվեստների քվադրիվիումին: Ազատական արվեստները եղել են դեռ հին հունական պյութագորյան փիլիսոփայության հետազոտության շարունակությունը, որը սկսվել էր «համընդհանուրի ըմբռնման ցանկությամբ»՝ տիեզերական ներդաշնակության հետազոտությունը մաթեմատիկայի ու երկրաչափության միջոցով: Նրա հետևորդները աստղագիտության, մաթեմատի-

[12] http://www.krugosvet.ru/enc/gumanitarnye_nauki/filosofiya/NEOPLATONIZM.html հասանելի է 16.05.2022:

[13] Տե՛ս **Դավթյան** 2019, 191–202:

[14] Տե՛ս **Դավիթ Անհաղթ** 1980, 107:

կայի (թվաբանության – Մ.Դ.), երկրաչափության և երաժշտության չորս արվեստները միացրել են որպես ուսումնասիրության մեկ բնագավառ՝ կազմելով «միջնադարյան քառյակ գիտություններ» [15]:

Պլատոնը տեսությունը ստորաբաժանում է բնագիտության և աստվածաբանության, որովհետև կամենում է, որ մաթեմատիկան լինի փիլիսոփայության ոչ թե մաս, այլ մի նախնական կրթություն, ինչպես քերականությունը և ճարտասանությունը: Դրա համար նա իր համալսարանի ճակատին փակցրել էր այսպիսի մակագիր՝ «Երկրաչափություն չիմացողը թող ներս չմտնի»[16]:

Այսինքն քաղաքական բոլոր մասնավոր գոյերի մեջ մնում է «համընդհանուրի ըմբռնման ցանկությունը», որն արտահայտվում է քանակի, ձևի և այլն դրսևորմամբ, այն կոչվում է առարկայորեն նյութական և մտովի՝ աննյութ գոյություն:

Իսկ ընդհանրապես, քաղաքագիտության վերաբերյալ ժամանակակից արտասահմանյան հրապարակումների ճնշող մեծամասնությունը ներառում է քանակական հետազոտությունների արդյունքները՝ որը և *քաղաքական մաթեմատիկան* է: Ի՞նչ հնարավորություններ է տալիս մաթեմատիկայի օգտագործումը քաղաքագիտության մեջ.

- հստակ ձևակերպում և վերլուծում է հասարակական կյանքում քաղաքական ոլորտի օրինաչափությունները, կատարում է այդ ոլորտում զարգացման կանխատեսումներ,

- չափում է քաղաքական երևույթների բնութագրերը ՝ ձեռք բերելով օբյեկտիվ տվյալներ, «ամուր հիմք» հետագա աշխատանքի համար,

- վերլուծում է հսկայական քանակությամբ տեղեկությունները,

- կառուցում է քաղաքական համակարգերի և գործընթացների մոդելներ…[17]:

*Յուրաքանչյուր քաղաքական գոյ կարելի է ենթարկել եռափիպ բնագիփական, ասփվածաբանական և մաթեմափիկական ճանաչողության՝ ձևավորելով քաղաքագիփության համար փեսական նյութ:*

***Քաղաքականության փիլիսոփայությունը*** ներառում է քաղաքական գործունեությունը, քաղաքական գործառույթը, քանի որ «…գործնական մասի նպատակը այն առաքինություններն են, որոնք զարդարում են բարքերը»[18]:

---

[15] Տե՛ս https://en.wikipedia.org/wiki/Liberal_arts_education հասանելի է 16.05.2022:

[16] **Դավիթ Անհաղթ** 1980, 104:

[17] https://polit.msu.ru/aboutfp/structure/labs/matanaliz/ հասանելի է 16.05.2022:

[18] **Դավիթ Անհաղթ** 1980, 84:

«Քաղաքական գործառույթին», ժամանակակից իմաստով, մոտ արտահայտություններից են՝ քաղաքական կյանք, քաղաքական գործունեություն, քաղաքական կարգապահություն, քաղաքական փորձ բառակապակցությունները[19]:

Վ. Երյոմինան իր «Ձևական և ոչ ձևական քաղաքական գործառույթները ժամանակակից Ռուսաստանում» հոդվածի էությունը կենտրոնացնում է քաղաքական գործառույթ նշված ձևերի բաժանման և դրանց փոխազդեցության վրա[20]:

Մ. Մարչենկոն իր «Քաղաքական տեսությունները և քաղաքական գործառույթ զարգացած կապիտալիստական երկրներում» գրքում անդրադառնում է ժամանակակից կապիտալիստական հասարակության քաղաքական համակարգի ինստիտուցիոնալ և գործառույթային բնութագրերին, օրենքի, սահմանադրության, պետության, քաղաքական կուսակցությունների և հասարակական տարբեր կազմակերպությունների տեղին ու դերին վերաբերող խնդիրներին[21]:

Ընդհանուր առմամբ, ժամանակակից իմաստով, քաղաքական գործառույթը կյանքի է կոչվում հասարակության նորմատիվ իրավական, վարքաբանական ու առաքինությունների միջավայրում:

**Ուշագրավ է, որ Դավիթ Անհաղթն իր քաղաքականության փիլիսոփայությունը դնում է երկու հիմքի վրա, տալով առաքինությունների պահպանման երկու սահմանում:**

– *Առաջինում, ըստ քաղաքական մերձավոր նպատակի,* քաղաքականության փիլիսոփայությունը մտածողություն է *քաղաքական մահվան* մասին:

– *Երկրորդում, ըստ քաղաքական գոյի անվան ստուգաբանության*, քաղաքականության փիլիսոփայությունը սեր է դեպի *քաղաքական իմաստություն*:

Ինչպես տեսնում ենք, երկու սահմանումներն էլ վերաբերում են քաղաքական գործունեությանը, վարքաբանությանը, առաքինությունների կարգավորմանը:

---

[19] https://kartaslov.ru/синонимы-к-слову/политическая+практика հասանելի է 16.05.2022:

[20] https://www.ncfu.ru/export/uploads/Dokumenty-Nauka/164_vest1_ncfu_eremina.pdf հասանելի է 16.05.2022:

[21] http://lawlibrary.ru/izdanie9749.html հասանելի է 16.05.2022:

*Ըստ Դավիթ Անհաղթի քաղաքականության փիլիսոփայության այս երկու հիմքերի, քաղաքական պրակտիկայում ՛«Ազգի» օրինակով, քաղաքային փիլիսոփայությունը կարելի է սահմանել հետևյալ կերպ:*

– Ըստ ազգի քաղաքական մերձավոր նպատակի. «Ազգի պրակտիկ քաղաքական փիլիսոփայությունը մտածողություն է *ազգի քաղաքական մահվան* մասին»:

– Իսկ ըստ ազգի անվան քաղաքական ստուգաբանության, «Ազգի գործնական քաղաքական փիլիսոփայությունը սեր է դեպի *ազգի* քաղաքական իմաստությունը»:

Այս առիթով Դավիթ Անհաղթը գրում է, որ արիստոտելականները գործնական փիլիսոփայությունը բաժանում են բարոյագիտության, տնտեսագիտության և քաղաքագիտության, իսկ պլատոնականները միայն երկու մասի՝ օրենսդրության և արդարադատության: «Եվ դա ճշմարիտ է,- ասում է Դավիթ Անհաղթը,- որովհետև փիլիսոփան կամ օրենքներ է սահմանում, որի շնորհիվ միշտ ազնվացնում է իր բարքերը և հանդես է գալիս որպես օրենսդիր, կամ էլ ուրիշներին է դատում ըստ գրված օրենքների, և հանդես է գալիս որպես դատավոր»[22]:

Օրենսդրությունը և արդարադատությունը, *անշուշտ, վերաբերում են հասարակության բարոյական, տնտեսական, քաղաքական ոլորտներին*, քանի որ «բարոյագիտությունը, տնտեսագիտությունը և քաղաքագիտությունը նյութ են ծառայում օրենսդրության և արդարադատության համար, որովհետև օրենսդիրը կամ ազնվացնում է ուրիշի բարքերը, կամ օրենքներ է սահմանում տան կամ քաղաքի համար, որոնց համաձայն, պարտավոր է ապրել յուրաքանչյուր քաղաքացի, իսկ այն, ով դատում է, դատում է կամ որևէ մեկին, կամ տունը, կամ քաղաքը»[23]:

Քաղաքական օրենսդրությունը և արդարադատությունը քաղաքականապես մաքրվելու արվեստ է, հետևապես անարդար օրենքները, կեղծ արդարադատությունը կարող են քաղաքական մահվան հասցնել ազգը, իշխանությունը, պետությունը, կուսակցությունը և այլն:

Իսկ ինչ է *քաղաքական մահը* որպես պատիժ, առաջին անգամ Ռուսաստանում կիրառել է Պյոտր I-ը՝ քաղաքական հանցագործությունների համար մահապատժի փոխարեն: Նրա հրամանով այդ պատիժը կիրառվել է ոչ միայն

[22] **Դավիթ Անհաղթ** 1980, 122:

[23] **Դավիթ Անհաղթ** 1980, 123:

քաղաքական, այլև քաղաքացիական հանցագործությունների՝ կաշառքի, կեղծ վկայության, բռնաբարության և այլնի համար[24]: Այսպիսով, հասարակությանը չարիք պատճառող մարդկանց զրկում են հասարակության համակեցության իրավունքներից:

Ըստ Դավիթ Անհաղթի քաղաքականության փիլիսոփայության, «քաղաքական մահվան մասին մտածել», նշանակում է, որ հասարակությունը իր վարքի մեջ մահացնելով բոլոր կողմնակալ, զգացմունքային կրքերն ու ցանկությունները, պետք է ապրի առաքինի ու օրինապահ վարքով, իրենից հեռացնելով չարիքը՝ ըստ իր քաղաքական կարողության:

Մահը, ըստ Պլատոնի, հենց հոգու կործանումն է[25], իսկ քաղաքական հոգու կործանումը հասարակության մեջ կարող է քաղաքական սուբյեկտներին հասցնել կործանման:

Հոգին երեք մասերից է բաղկացած, գրում է Անհաղթը, որովհետև ունի բանականություն, ցասում և ցանկություն, իսկ հոգեկան առաքինությունները չորսն են՝ արիություն, արդարություն, խոհականություն, ողջախոհություն: Հոգու ամեն մի մաս պետք է զարդարել նրան բնորոշ առաքինությամբ: Այսպես, բանական մասը պետք է զարդարել խոհականությամբ, ցասմնականը՝ արիությամբ, իսկ ցանկականը՝ ողջախոհությամբ: Բայց քանի որ հոգու յուրաքանչյուր մաս ոչ միայն պետք է զարդարել իրեն բնորոշ առաքինությամբ, այլև նրանց միջև համապատասխանություն և ներդաշնակություն հաստատել, որի պատճառով դրանք բոլորը կներթափանցվեն արդարությամբ Պլատոնը իր տրամախոսություններից մեկը անվանում է «Արդարի կամ պետության մասին»[26]: Արդարության մասին ուսմունքը քաղաքականությունն է, շարունակում է Դավիթ Անհաղթը[27]:

*Օրինակ. ազգը որպես քաղաքական գոյ, որպես «կենդանի օրգանիզմ», ունի իր ազգային հոգին, երբ այս հոգին կորցնում է իր մասերին համապատասխան առաքինությունները՝ հասնելով անարդարության, այն ենթարկվում է քաղաքական մահվան:*

Այս առիթով XVIII դարի հայ քաղաքական հրապարակախոս Մովսես Բաղրամյանը գրում է. «Այն մասին, թե ինչու կործանվեց Հայոց իշխանությունը, և գլխավորապես ինչ կարծիքներ կան այդ մասին» հարցադրմամբ

---

[24] https://dic.academic.ru/dic.nsf/brokgauz_efron/95088/Смерть հասանելի է 16.05.2022:

[25] **Պլատոն** 2006, 108:

[26] **Դավիթ Անհաղթ** 1980, 85:

[27] Տե՛ս **Դավիթ Անհաղթ** 1980, 89:

բացատրում է, որ աստվածային և մարդկային առաքինությունների փոխարեն Հայոց մեջ դրսևորվել են մահացու մեղքեր ու արատներ, ինչպիսիք են տգիտությունը, անմիաբանությունը, չարությունը, անկարգությունը, կամայականությունը, նախանձը, ատելությունը, ծուլությունը, որոնք հասցրել են Հայոց իշխանության կործանմանը[28], որ խոսում է հենց ազգի հոգու կործանման, քաղաքական մահվան մասին:

Այսպիսով, *պլատոնյան քաղաքական գործառույթը պահանջում է, որ քաղաքական գոյերը չխախտեն արդարության սկզբունքը* և արդարադատությունը ուղղեն դրանց խախտումների հայտնաբերմանն ու շտկմանը:

*Ըստ ստուգաբանության*, «Քաղաքականության փիլիսոփայությունը սեր է դեպի *քաղաքական իմաստությունը*»**:**

Օրինակ՝ Հայոց ազգի անվան ստուգաբանությանը («Հայ», «Արմեն»), անվան ծագմանն ու արմատներին հետևելը արդեն իմաստություն է քաղաքական գործառույթում:

Քաղաքական իմաստության նվազագույն պահանջը պետության մեջ հասարակության ազատությունը համատեղելն է հասարակարգի հետ, իսկ առավելագույնը՝ պետության քաղաքականությունը *էթիկային ենթարկելն է*[29]:

***Քաղաքագիտության ու քաղաքականության միասնական փիլիսոփայությունը* Դավիթ Անհաղթը,** *ըստ քաղաքական հեռավոր նպատակի,* **սահմանում է այսպես.** «Քաղաքական փիլիսոփայությունը Աստծուն նմանվելն է ըստ մարդկային քաղաքական կարողության»:

Դավիթ Անհաղթը տալիս է նաև այն *սահմանագիծը որտեղ քաղաքական տեսությունն ու պրակտիկան հանդես են գալիս միասնաբար*: Աստծուն նմանվելը ծառայում է որպես քաղաքականության տեսական մաս, իսկ ըստ մարդու քաղաքական կարողության՝ քաղաքականության գործնական մաս:

Այս առիթով Պլատոնը գրում է. «Շփվելով աստվածայինի և կարգավորվածի հետ՝ փիլիսոփան նույնպես դառնում է կարգավորված և աստվածային, որքան որ թույլ են տալիս մարդկային ուժերը»[30]:

«Փիլիսոփայությունը Աստծուն նմանվելն է ըստ մարդկային կարողության» սահմանման միջոցով գրում է Դավիթ Անհաղթը,- մենք իմանում ենք, որ փիլիսոփայությունը քաղաքագիտություն է, որովհետև քաղաքական փիլիսո-

---

[28] **Բաղրամյան** 1991, 135:

[29] https://proza.ru/2010/06/08/1089 հասանելի է 16.05.2022:

[30] **Պլատոն** 2017, 248:

փան ձգտում է և՛ գիտությամբ, և՛ գործերով ըստ մարդկային կարողության նմանվել Աստծուն»[31]:

Ամփոփելով քաղաքական տեսության ու գործնականի առկայությունը մարդու մեջ, նշենք, որ քաղաքական գոյերի ճանաչողությունը կատարվում է մարդու ճանաչողական հինգ ընդունակություններով՝ *քաղաքական մտքով, քաղաքական տրամախոհությամբ, քաղաքական զգայությամբ, քաղաքական կարծիքով և քաղաքական երևակայությամբ:* Իսկ քաղաքական գործունեության հիմքում կանգնած բարքերը, կառավարում ու զսպում են մարդու *քաղաքական-գործնական* հինգ ընդունակությունները. *քաղաքական կամքը, քաղաքական ընտրողությունը, քաղաքական հոժարությունը, քաղաքական ցանկությունը և քաղաքական բարկությունը*[32]:

Ինչ վերաբերում է *Աստծուն՝ տիեզերական կարգավորվածությանը* նմանվելուն, Դավիթ Անհաղթը բացատրում է, թե ինչ իմաստով է այստեղ խոսում նմանության մասին, և նշում, թե քանի նշանակություն ունի *նմանությունը*[33]:

Նմանության առաջին նշանակության մասին Դավիթ Անհաղթը ասում է. «Իրերը նման են կոչվում այն դեպքում երբ նույն որակական հատկանիշը դրսևորվում է միևնույն տեսակի բոլոր իրերում»[34]:

Իրերն իրենց բնորոշ հատկություններով ունեն իրենց տեսակներն ու բազմությունները, որոնք միմյանց հետ հարաբերության մեջ են մտնում կարգավորվածության սկզբունքով:

Օրինակը ցույց տանք «ազգ» հասկացությամբ: Ազգի բոլոր անհատներն ունեն նույն հատկությունները, հետևապես ազգային անհատները նման են իրար, ըստ Դավիթ Անհաղթի նմանության առաջին նշանակության:

Երկրորդ նշանակությամբ, «Իրերը նման են կոչվում նաև այն դեպքում, երբ նույն որակական հատկանիշը ավել կամ պակաս դրսևորվում է տարբեր տեսակի իրերում»[35]: Օրինակ՝ տարբեր ազգեր ունեն իրենց տարբեր լեզուները, բայց ընդհանրապես ունեն *լեզվի հատկանիշ*, որպես ազգին բնորոշ հատկանիշ: Բոլոր ազգերն իրար նման են հենց իրենց «ազգ» կոչմամբ, որոնք ներառված են «ազգ» ընդհանուր, սեռային հասկացության սահմաններում:

---

[31] **Դավիթ Անհաղթ** 1980, 124:
[32] Տե՛ս **Դավիթ Անհաղթ** 1980, 125:
[33] Տե՛ս **Դավիթ Անհաղթ** 1980, 80:
[34] Տե՛ս **Դավիթ Անհաղթ** 1980, 80:
[35] Տե՛ս **Դավիթ Անհաղթ** 1980, 81:

Երրորդ նշանակությամբ, «Նման են կոչվում իրերը նաև այն դեպքում, երբ տարբեր որակական հատկանիշները դրսևորվում են տարբեր տեսակների պատկանող իրերում»[36]: Տարբեր ազգեր ունեն տարբեր որակական հատկանիշներ, բայց նրանք նման են միմյանց որպես *մարդ* և մտնում են *մարդ* հասկացության ծավալի մեջ:

Ի դեպ, շատ գիտնականների կարծիքով, ժամանակակից հասարակության կառավարման տեխնոլոգիաները, արհեստական բանականությունը, համացանցային կապերը, համաշխարհային գլոբալիզացիոն դաշտերը նպաստում են ազգերի ձուլմանն ու միախառնմանը: Բավական է հիշել միայն Բաբելոնի աշտարակաշինության օրինակը, որտեղ համայն մարդկությունը մեկ լեզվով ու միացյալ նպատակով ցանկանում էր հասնել Աստծուն: Սակայն այն ավարտվեց փլուզումով, ամենատարբեր լեզուների ստեղծմամբ: Ազգերն ի սկզբանե բնատեսակներ են, որոնք գոյություն ունեն հենց իրենց տարբեր տեսակներով: Համաշխարհային քաղաքականությունը պետք է վարել հենց այս տարբեր ազգային՝ էթնիկ միավորների հետ խաղաղ համագործակցմամբ:

Չորրորդ նշանակությամբ, «Նմանությունը իրերի միջև լինում է նաև այնպիսին,- գրում է Դավիթ Անհաղթը,- ինչպես պատկերի և բնօրինակի միջև: Այսպես, մենք ասում ենք, որ Սոկրատի պատկերը նման է Սոկրատին: Պետք է գիտենալ, որ *բնօրինակ է կոչվում նախափիպը, որին համապատասխան ստեղծվում է պատկերը,* ինչպես, օրինակ, երբ Սոկրատի պատկերը որպես բնօրինակ ունի Սոկրատին»[37]:

Այսինքն, նմանությունները, որոնք վերաբերում են նախատիպ-պատկերին, արդեն աստվածային են: Համաձայն նմանության այս նշանակության, ըստ մեր բերած օրինակի, «ազգը» գոյություն չէր ունենա, եթե նրա աստվածային նախատիպը՝ «աստվածային բնօրինակը», չլիներ:

### Եզրակացություններ

Շնորհիվ Դավիթ Անհաղթի քաղաքական փիլիսոփայության, մենք ունենք քաղաքական տեսության, քաղաքական գործառույթի ու նաև քաղաքական տեսության և գործառույթի միասնական դրսևորման սահմանումները:

Նրա քաղաքական փիլիսոփայության սահմաններում կարողանում ենք տեսնել քաղաքագիտության իդեալիստական կողմը, որն ընդլայնում է քաղաքական գիտելիքները, կատեգորիաները, հասկացությունները:

[36] Տե՛ս **Դավիթ Անհաղթ** 1980, 81:

[37] **Դավիթ Անհաղթ** 1980, 81:

Ժամանակակից քաղաքագիտությունը հումանիտար գիտություն է, սակայն այս աշխատանքով տեսնում ենք, թե ինչպես է այն առնչվում բնագիտական, մաթեմատիկական ու աստվածաբանական գիտելիքներին, և ինչպես է վերջինս իր տեղն ու դերը գտնում փորձնական ու ճշգրիտ գիտությունների շարքում: Սա խիստ բացառիկ իրողություն է, քանի որ ժամանակակից հասարակական գիտությունները բնական գիտությունների հետ շփման եզրեր չունեն:

## ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

**Բաղրամյան Մ.** 1991, Նոր տետրակ որ կոչվում է հորդորակ, Երևան, Երևանի համալսարանի հրատարակություն, 264 էջ:

**Դավիթ Անհաղթ** 1980, Երկեր, Երևան, «Սովետական գրող», 328 էջ:

**Դավթյան Մ.** 2020, Դավիթ Անհաղթի «Քաղաքական փիլիսոփայության» սահմանումները, Բանբեր հայագիտության, հայագիտական միջազգային հանդես, Երևան, թիվ 3, էջ 72–87:

**Դավթյան Մ.** 2019, Մովսես Խորենացու պատմափիլիսոփայության նորպլատոնական մեթոդը, Բանբեր հայագիտության, Հայագիտական միջազգային հանդես, Երևան, թիվ 3, էջ 191–202:

**Պլատոն** 2006, հ. 1, թարգմ. Ս. Ստեփանյան, Երևան, «Անտարես», 407 էջ:

**Պլատոն** 2017, Պետություն, հ. 4, Երևան, «Անտարես», 439 էջ:

**Копнин П.В.** 1974, Гносеологические и логические основы науки, Москва, изд. «Мысль», 568 с.

**Марченко М.Н.** 1992, Политические теории и политическая практика в развитых капиталистических странах, Москва, изд. Моск. ун-та, 384 с.

https://ru.wikipedia.org/wiki/Политическая_философия

https://ru.wikipedia.org/wiki/Теория

http://wikipedia.ru.nina.az/wiki/Политическая_теология

http://www.krugosvet.ru/enc/gumanitarnye_nauki/filosofiya/NEOPLATONIZM.html

https://en.wikipedia.org/wiki/Liberal_arts_education

https://polit.msu.ru/aboutfp/structure/labs/matanaliz/

https://kartaslov.ru/синонимы-к-слову/политическая+практика

https://www.ncfu.ru/export/uploads/Dokumenty-Nauka/164_vest1_ncfu_eremina.pdf

https://urss.ru/cgi-bin/db.pl?lang=Ru&blang=ru&page=Book&id=161916

http://lawlibrary.ru/izdanie9749.html

https://dic.academic.ru/dic.nsf/brokgauz_efron/95088/Смерть

https://proza.ru/2010/06/08/1089

# ДЕФИНИЦИИ ТЕОРИИ И ПРАКТИКИ ПОЛИТИЧЕСКОЙ ФИЛОСОФИИ ДАВИДА АНАХТА

ДАВТЯН М.

**Резюме**

***Ключевые слова:*** Давид Анахт, философия политической науки, философия политики, политическая теория, политическая практика, политическое естествознание, политическая теология.

Благодаря политической философии Давида Анахта мы располагаем дефинициями политической теории, политической практики, а также общим определением политической теории и практики.

Политическая философия Давида Анахта раскрывает идеалистическую сторону политической науки, которая расширяет политические знания, категории, понятия.

Современная политическая наука является гуманитарной наукой, но в данной работе мы видим, как она соотносится с естественными науками, математикой и теологией и как последняя находит свое место среди экспериментальных и точных наук. Это уникальное явление, ибо современные социальные науки не имеют точек соприкосновения с естественными науками.

# THE DEFINITIONS OF THEORY AND PRACTICE IN THE POLITICAL PHILOSOPHY OF DAVID ANHAGHT

DAVTYAN M.

**Summary**

***Key words:*** David Anhaght, philosophy of political science, philosophy of politics, political theory, political practice, political natural science, political mathematics, political theology.

Due to the political philosophy of Davit Anhaght, we have definitions of political theory, political practice, as well as a generalized definition of the political theory and practice.

Davit Anhaght's highlights the the idealistic aspect of political science which expands political knowledge, categories and concepts.

Modern political science is part of the humanities, however in this research we single out its interrelations with natural sciences, mathematics and theology, occupying its place among experimental and exact sciences. This is a unique phenomenon as humanities are not interconnected with natural sciences.

# ՀՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԱԶԳԱԳՐՈՒԹՅՈՒՆ ARCHAEOLOGY AND ETHNOGRAPHY

**GAREGIN TUMANYAN***

*Doctor of Sciences in History*

*Institute of Archaeology and Ethnography NAS RA*

gstumanyan@gmail.com

DOI: 10.54503/1829-4073-2022.3.116-132

## ON SOME FORMS OF POTTERY DISCOVERED IN THE SEPULCHRES OF TRANSCAUCASIA OF THE 7TH–6TH CENTURIES B.C.

***Key words:*** Transcaucasia, Armenia, Scythian sepulchre, culture, ceramic vessels, pottery, ornaments.

### *Introduction*

Pottery embodies not only cultural but also ethnographical features[1]. Both the nature of pottery and the decoration of ceramic vessels are viewed as characteristics that “define ethnics”[2]. According to another definition, luxury goods, clayware, and ornaments belong to the so called, “ethnics-making” qualities of culture. These qualities are not predetermined by economic demands as much as, for instance, the qualities of production tools or weapons are[3].

In different periods of the historical-cultural development of a particular society, obvious diversities of ceramics are mediated by ethnic circumstances as well. Sometimes, due to the historical occurrences, a society receives an opportunity to dictate the modes of its cultural expression to another society. In this case, the condition that makes changes in the pottery possible to occur is that

* *Հոդվածը ներկայացվել է 01.03.22, գրախոսվել է 01.03.22, ընդունվել է տպագրության 01.12.22:*

[1] **Смирнов** 1966, 40.

[2] **Кнабе** 1959, 248.

[3] **Антонова** 1977, 6.

these changes should not contradict the national particularities and aesthetic perceptions of those who produce the pottery[4].

In professional literature, the possibility of the usage of ethnographic materials in exploring ancient pottery is emphasised[5]. Besides, one should consider the fact that ceramics cannot be viewed as an important feature of the culture of nomads, as they mostly used the ware made by their neighboring settled nations[6]. Local pottery is almost absent in the early Scythian native culture. It is believed that the clayware uncovered in the tombs of the northern Caucasus was made by those carrying the Koban culture[7]. With the exception of one burial, no pottery is encountered in sepulchres of two of the three Tauric cultural groups[8]. Anyhow, the need of identifying the reasons for considerable increase of new forms in the composition of local pottery should not be ignored. Naturally, the division of Armenia's Iron Age into phases is also based on this principle[9]. Therefore, based on rich observational material, this study has sought to demonstrate the changes in the forms of pottery in Transcaucasia that were induced during the 7$^{th}$–6$^{th}$ centuries B.C. as a result of interaction between newly appeared Scythian and local ceramic complexes.

### *Zoomorphic Vessels*

As pottery is usually produced by women, in a situation if no other changes occur in a given culture but pottery atypical of that culture emerges, one could suspect the presence of foreign women in that culture[10]. Similarly, in a situation of obvious cultural changes, the maintenance of some older traditions of ceramics production can be explained by the presence of women belonging to the old culture. Nevertheless, changes in the form and ornaments of pottery, combined with alterations in other cultural constituents, could be associated with changes in the male component of the ethnic mass. During the Scythian period, narrow-necked jugs having tang-covered handles and spherical body ornamented with beam-form lines originating from knobs, appeared in the South Caucasus. These

[4] **Բրնդյան** 1986, 28:
[5] **Сайко** 1982, 7, 152.
[6] **Петренко** 1983, 46.
[7] **Мелюкова** 1989, 115.
[8] **Крис** 1989, 82.
[9] **Avetisyan** 2009, 60, 68, 76, Fig. 8.
[10] **Смирнов** 1971, 189; **Ковалевская** 1984, 44.

intolerance of female infidelity. Notably, he ignores the partners of the unfaithful wife and focuses his anger on the wife, in some versions he also tests the seemingly loving and faithful wife. Accepting Shah's seductive offer, the woman pushes him to the extreme step of ordering the extermination of the female sex. The behavior of Shah Abbas suggests that he places all the responsibility of love and loyalty on the wife, because the wife has been considered the patron and the guardian of the family hearth since ancient times, therefore she is also responsible for the maintenance of marital relations.

An examination of Shah Abbas plots shows that a number of popular tale motifs were invoked in Shah Abbas themes, which are conditioned by the peculiarities of Shah Abbas' novelization. Especially in the case of female-themed motifs, Shah Abbas acts as an executor of the function of destroying, reforming, and setting women who deviate from accepted standards on the right path. Shah Abbas learns about the problems of women's closed society with a disguised tour. Having personally faced women's problems, he tries to solve them in his own way and in some cases makes wrong decisions due to anger, without considering their disastrous consequences. In contrast to treacherous and faithful women, popular experience and wisdom come to the aid of Shah Abbas to reconsider the wrong decision taken.

These plots of female loyalty and infidelity have a strong moral orientation, they cover a wide range of society's life and lifestyle, customs, and beliefs, they bring forward the problems that have been troubling the society for centuries, the answer to which is given by popular wisdom in a concise formulation: “... there is a woman who is a hero, and there is one who is a scumbag”.

The examined Shah Abbas plot is a fusion of two motifs built on contrasts, in which the behavior of treacherous and loyal women and its assessment by the king and society is revealed through two female types.

The plot helps to reveal other aspects of Shah Abbas’ character and behavior as well. Although the Shah's powers are, one might say, open-ended, and the character development and personal perceptions of the Shah lead to the consequence that is conditioned by his command, there is still a natural order established from above that even the Shah has no right to violate.

## BIBLIOGRAPHY

**Խեմչյան Է. 2017**, Թագավորի աշխարհատեսության մոտիվը հայ բանահյուսության շահաբասյան սյուժեներում, Բանբեր հայագիտության, № 2, ՀՀ ԳԱԱ «Գիտություն» հրատ., Երևան, էջ 151-168:

ՀԱԲ 1983, 15, **Ղազիյան Ա**., Արցախ, Հայ ազգագրություն և բանահյուսություն, հ. 15, Երևան, «Գիտություն» հրատ., 192 էջ:

ՀԱԲ 2000, 21, **Խեմչյան Է.,** Տավուշ, ՀԱԲ, հ. 21, Երևան, «Գիտություն» հրատ., 314 էջ:

Հազար ու մեկ գիշեր 1959, Թարգմ. Էդ Աղայան, Վ. Տալյան, Երևան, Հայպետհրատ, 686 էջ:

ՀԱԻԲԱ 1945, Հնագիտության և ազգագրության ինստիտուտի բանահյուսական արխիվ FFIII: 1535,01-1540,00, բանահավաք՝ Ս. Իսրայելյան, Շամշադին-Նավուր, բանասաց՝ Ֆ. Ասրիյան:

ՀԱԻԲԱ 1940-1950, ՀԱԻԲԱ FFIX: 2415,01-2420,00, բանահավաք՝ Մ. Գրիգորյան-Սպանդարյան, ԼՂԻՄ:

ՀԱԻԲԱ 1961, ՀԱԻԲԱ FFV: 0241,01-0246,00, բանահավաք՝ Ա. Կարապետյան, Իջևան-Թալա, բանասաց՝ Ս. Օրդինյան:

ՀԱԻԲԱ 1961, ՀԱԻԲԱ FFV: 0463,01-0465,00, բանահավաք՝ Ա. Կարապետյան, Իջևան- Ջողազ, բանասաց՝ Ա. Հարությունյան:

ՀԱԻԲԱ 1961, ՀԱԻԲԱ FFV: 0405,01-0408,00, բանահավաք Ա. Կարապետյան, Իջևան- Ռևազլու, բանասաց Ա. Ղալումյան:

ՀԱԻԲԱ 1961, ՀԱԻԲԱ FFVII: 8335,01-8346,00, բանահավաք՝ Ա. Նազինյան, Նոյեմբերյան, բանասաց Ս. Գորգինյան:

ՀԱԻԲԱ 1967, ՀԱԻԲԱ FFIV: 4705,02-4792,00, բանահավաք՝ Ա. Պռազյան, Դաշքեսան-Ղուշչի, բանասաց՝ Ղ. Պռազյան:

ՀԱԻԲԱ 1967, ՀԱԻԲԱ FFVII: 6489,01-6496,00, բանահավաքներ՝ Ա. Նազինյան, Վ. Սահակյան, Սիսիան-Ուզ, բանասաց՝ Մ. Ավագյան:

ՀԱԻԲԱ 1973-1974, 1975, ՀԱԻԲԱ, բանահավաք Բ. Ղազիյանի ֆոնդ, «Ղարաբաղի բանահյուսություն» (ձեռագիր հավաքածու), № 5 տետր:

ՀԱԻԲԱ 1983, ՀԱԻԲԱ բանահավաք Բ. Ղազիյանի ֆոնդ, «Երևանի բանահյուսություն» (ձեռագիր ժողովածու):

**Հովսեփյան Հ. 2009,** Ղարադաղի հայերը. Բանահյուսություն, հ. II, Երևան, «Գիտություն» հրատ., 644 էջ:

**Սամուէլեան Խ. 1903,** Արեան վրէժ և փրկանք, Ազգագրական հանդէս X գիրք, Թիֆլիս, արագատիպ Մ. Մարտիրոսեանցի, էջ 269–303:

**Ֆրեզեր Ջ. 1989,** Ոսկե ճյուղը, Մոգության և կրոնի ուսումնասիրություն, Երևան, «Հայաստան» հրատ., 880 էջ:

**Фильштинский И. 1986,** Вечно юная сказка. Халиф на час. Избранные сказки, рассказы и повести из «Тысячи и одной ночи». Сост., вступительная статья и примечания И.М. Фильштинского, Москва, изд-во «Правда», 608 с.

# ԿՆՈՋ ՀԱՎԱՏԱՐՄՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԱՆՀԱՎԱՏԱՐՄՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅ ԲԱՆԱՀՅՈՒՍՈՒԹՅԱՆ ՇԱՀԱԲԱՍՅԱՆ ՍՅՈՒԺԵՆԵՐՈՒՄ

ԽԵՄՉՅԱՆ Է.

## Ամփոփում

***Բանալի բառեր՝*** սյուժե, մոտիվ, անհավատարմություն, բարոյախրատական եզրակացություն, սովորույթ, հավատալիք, արյան վրեժ:

Հայ վիպական բանահյուսության հեքիաթային սյուժեներում առանձին խումբ են կազմում կնոջ հավատարմության և անհավատարմության մոտիվներով սյուժեները, որոնք աղերսվում են Շահ Աբասի վիպական կերպարին: Սյուժեն բաղկացած է երկու միմյանցից անկախ պատումներից: Պատումի առաջին մասում ի ցույց է դրվում կնոջ անհավատարմությունը, իսկ երկրորդ պատումն առաջինի հակադրությունն է, որտեղ հանդես է գալիս նվիրված կնոջ կերպարը: Այս ինքնատիպ սյուժեում պահպանված են հնագույն սովորույթներ, հավատալիքներ և ծիսական գործողություններ, ինչպես օրինակ՝ արյան վրեժի սովորությունը, որի իրագործման գործառույթը ստանձնում է կինը:

Պատումները բարոյախրատական որոշակի նպատակ են հետապնդում, դրանց եզրակացությունը պայմանավորված է դեպքերի շղթայում կնոջ վարքագծի ու բնավորության հակադիր դրսևորումներով: Սյուժեն նպաստում է բացահայտելու Շահ Աբասի բնավորության ու վարքագծի այն կողմերը, երբ նա հանդես է գալիս որպես հասարակական կյանքի կարգավորող ու անարդարությունները վերահսկող, որի գործողությունները, սակայն, ոչ միշտ են արդարամիտ և կարող են հանգեցնել բնական կարգի խաթարմանը:

# ВЕРНОСТЬ И НЕВЕРНОСТЬ ЖЕНЩИНЫ В ШАХАБАССКИХ СЮЖЕТАХ АРМЯНСКОГО ФОЛЬКЛОРА

ХЕМЧЯН Э.

## Резюме

***Ключевые слова:*** сюжет, мотив, неверность, морально-дидактическое заключение, обычай, верование, кровная месть.

В сказочных сюжетах армянского эпического фольклора отдельную группу составляют сюжеты, построенные на мотивах женской верности и неверности, соотносящиеся с эпическим образом Шаха Аббаса. Сюжет состоит из двух независимых рассказов. Первая часть посвящена неверности женщины, а вторая часть являет собой противопоставление первой, где повествуется о верности и преданности женщины. В этом своеобразном сюжете нашли отражение древнейшие обычаи, верования и обрядовые действия, к примеру, обычай вендетты, которую осуществляет женщина.

Рассказы однозначно имеют морально-дидактическую направленность. Сюжет способствует выявлению скрытых черт характера и поведения Шаха Аббаса, когда он пытается упорядочить общественную жизнь и пресечь несправедливость, однако его действия не всегда справедливы и могут привести к дисбалансу естественного порядка.

**ԱՐՄԵՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ***
*Բանասիրական գիտությունների դոկտոր*
*ՀՀ ԳԱԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտ*
alpehist@gmail.com
DOI: 10.54503/1829-4073-2022.3.169-185

# ԱՐԱԳԱԾ. ԱՆՈՒՆԸ ԵՎ ԱՌԱՍՊԵԼԸ[1]

*... (էտնա լեռան) ամենաբարձր գագաթին նստած Հեփեստոսը մրճահարում է հալված երկաթահանքը:*

***Էսքիլոս***

*Դո՛ւ, Արագա՛ծ, ալմաստ վահան*
*Կայծակեղեն թրերի...*

***Ա. Իսահակյան***

***Բանալի բառեր՝*** Արագած, Արայի լեռ, Արայի դաշտ, Գեղամա լեռներ, Մասիս, Արա Գեղեցիկ, Գրիգոր Լուսավորիչ:

***Ներածություն***

Ըստ Խորենացու (Ա.ժբ), Հայկի առաջնեկ Արամանյակը հաստատվում է Արարատյան դաշտում և շենացնելով Արագածի ստորոտի շրջանը, լեռը կոչում իր անվան նմանությամբ՝ «յանկագոյն յիւր անուն Արագած»: Իսկ Արարատյան դաշտը և ողջ Այրարատ նահանգը հետագայում կոչվում են Արա Գեղեցիկի անունով «դաշտն Արայի» (Խորենացի Ա.ժե): Ակնհայտ է, որ Արագածը ավելի հեշտ է կապել Արայի, քան Արամանյակի անվան հետ: Այս «ժողովրդական ստուգաբանության» համար կարող էին հիմք հանդիսանալ Արայի և Արամանյակի որոշակի կերպարային ընդհանրությունը և անունների հնարավոր ստուգաբանական կապը[2]:

---

* *Հոդվածը ներկայացվել է 20.10.22, գրախոսվել է 02.11.22, ընդունվել է տպագրության 01.12.22:*

[1] Իմ խորին երախտագիտությունն եմ հայտնում Հ. Մարտիրոսյանին՝ գրականության տրամադրման և խորհրդատվության համար:

[2] Արամանյակի, որպես «առաջին Արայի» վերաբերյալ տե՛ս **Պետրոսյան** 2014, 230–232:

1939-ին հրատարակված մի հոդվածում Գ. Ղափանցյանը, առանց հիմնավորման, Արագած լեռնանունը և Մեհոգած գյուղանունը ստուգաբանում է համապատասխանաբար որպես «Արայի գոտի» կամ «Արայի լեռ» և «Միթրա աստծու գոտի»[3]: Բանն այն է, որ արդեն 1927-ին հրատարակված մի աշխատության մեջ նա այլ լծորդների շարքում հիշում է *գ-գածիմ* և *գաւտի* (> *գոտի*) բառերը՝ որպես մեկ արմատից առաջացած[4]: Այս ստուգաբանությունը զարգացրել է Է. Աղայանը, ըստ որի՝ Արագածի երկրորդ բաղադրիչը հայ. *զգածիմ* «հագնվել, համակվել» բառի *գած-* արմատն է, այստեղ՝ «հյուսված շարք, պար», իմաստով, հնդեվրոպական *weg- «հյուսել, կապել» արմատից, իսկ ողջ անունը մեկնաբանվում է որպես «Արայի պար՝ լեռնաշղթա»[5]:

Հետագայում Գ. Ղափանցյանը նոր ստուգաբանություն է առաջարկել Արագածի համար, ըստ որի այն պետք է նշանակի «Արայի գահ»[6]: Անվան *գած* մասը համարվում է կամ ուրարտերեն, ուր guza կամ gutsa/*գուծա* նշանակում է «գահ» (ներկայացվում է իբրև շումերական բառ), կամ իրանական, հմմտ. պարթև. gās, հին իրան. gāθu «գահ, թախտ, բազմոց»: Նույն արմատը նա պահպանված է համարում նաև Մեհոգած գյուղանվան մեջ, որն էլ համապատասխանաբար մեկնաբանվում է որպես «Միհր աստծու գահ», այդ անունները համեմատելով Աթոռ Նահատայ «Անահիտի աթոռ», պրսկ. Շահթախթ, Թախթ ի Սուլեյման տեղանունների հետ: Այս ստուգաբանությունը լայնորեն տարածված է մեզանում, և՛ գիտական, և՛ զանգվածային հրապարակումներում:

Ղափանցյանի առաջին ստուգաբանությունը՝ «Արայի գոտին» իմաստաբանորեն թերևս ընդունելի կլիներ (Արագածն Արարատյան՝ «Արայի դաշտը» եզերող՝ գոտևորող լեռներից մեկն է, կա նաև հայոց լեռների գոտիների վերաբերյալ մի հայտնի լեգենդ)[7], սակայն Ա. Հանեյանը հիմնավորել է *գաւտի* բառի ծագումն այլ արմատից[8]: Նույն ստուգաբանության Աղայանի մեկնաբա-

---

[3] **Капанцян** 1975, 59.

[4] **Ղափանցյան** 1939, 208:

[5] **Աղայան** 1974, 48–50, 1986, 78–79:

[6] **Ղափանցյան** 1944, 98–99:

[7] Ըստ մի ավանդության, հայոց լեռները մի ժամանակ եղբայրներ են եղել, որոնք արթնանալով՝ նախ կապել են իրենց գոտիները և հետո միայն ողջունել իրար: Եղբայրները ծերանում են, և մի օր էլ արթնանալով՝ բարևում են իրար, մոռանալով գոտիները կապել: Աստված տեսնելով այդ պատժում է եղբայրներին. նրանք դառնում լեռներ, գոտիները՝ կանաչ դաշտեր, իսկ եղբայրների արցունքները՝ աղբյուրներ, տե՛ս **Ղանալանյան** 1969, 10:

[8] **Հանեյան** 2005:

նությունը համոզիչ չէ. Գ. Ջահուկյանն ընդունում է հայ. *գած*-ի ծագումն այդ հնդեվրոպական արմատից, նշելով, որ վերջինս հայերենի տվյալներով պետք ուղղվի *weĝ-ի[9], բայց հնդեվրոպական ժամանակակից բառարանները արմատը թողնում են նույն տեսքով[10]: Կասկածելի է նաև «հյուսված շարքից»՝ «լեռնաշղթա» զարգացումը: Ինչևէ, այդ ստուգաբանությունը ներկայումս չի շրջանառվում[11]: Ղափանցյանի երկրորդ՝ «Արայի գահ» մեկնաբանությունն անընդունելի է: Ժամանակակից տվյալներով ուրարտերեն guza «գահ» բառ գոյություն չունի, իրանական նշված արմատից հայերեն ունենք հենց *գահ* բառը, իսկ բերված ձևերից *գած* զարգացումն անհնարին է:

### *Արայի վերածնվող կերպարը*

Արագածը, ինչպես ասվեց, Արարատյան դաշտը եզերող լեռներից է. մյուսներն են Արայի լեռը, Գեղամա լեռները և Մասիսը: Դաշտի հին անվանումները, ըստ ավանդության, կապված են Հայկ նահապետի ժառանգների, բայց հիմնականում՝ Արայի հետ: Այսպես, Արայի (Արարատյան) դաշտի և Արայի լեռան դեպքում դա ուղղակի ակնհայտ է (այս լեռնանունն ավանդված չէ հնից, բայց նրա հնությունը շատ հավանական է), իսկ Արագածի առաջին մասն ուղղակի համընկնում է Արայի անվան հետ: Գեղամը և Ամասիան, որոնց անունների հետ են կապվում Գեղամա լեռներն ու Մասիսը, Արայի նախնիներն են (նկատենք, որ Գեղամի անունն էլ համահունչ է Արայի Գեղեցիկ կոչման հետ): Առասպելաբանության մեջ անվանումը հավասարազոր է արարմանը, այսինքն՝ հայոց ազգածին ավանդությունն այստեղ ակնարկում է ոչ միայն հայ ժողովրդի, այլ նաև նրա երկրի կենտրոնի՝ Արարատյան դաշտի արարումը՝ ազգածին նահապետների կերպարների միջոցով:

Հայոց ազգածին ավանդությունը հնդեվրոպական առասպելաբանության մի ակնհայտ նմուշ է[12], որում, ինչպես և այլ ժողովուրդների ազգածին վեպերում, օտար տարրերը հազվադեպ են[13]: Ըստ այդմ, առավել հավանական է Արագածի բնիկ հայկական՝ հնդեվրոպական ծագումը և նրա երկրորդ մասում կարելի է տեսնել հնդեվրոպական *weg̑- «աշխույժ, ուժեղ լինել» արմատը, որից են ծագում «ժիր, աշխույժ, կայտառ, արթուն, արթնացում քնից,

---

[9] **Ջահուկյան** 2010, 145:

[10] Տե՛ս օրինակ Rix et al. 2001, 662.

[11] Ինձ հայտնի է Արագածի այս ստուգաբանության միայն մեկ հղում, տոմարագիտական աշխատության մեջ, տե՛ս **Բրուտյան** 1997, 478:

[12] **S. Ahyan,** 1982. **Պետրոսյան** 2017, 27–36:

[13] **Мелетинский** 1986, 62.

արթնանալ, վերակենդանանալ» և նման իմաստներով մի շարք բառեր հնդեվրոպական լեզուներում, հմմտ. հնդ. vājayati «շարժել, խթանել», լատ. vigil «արթուն», vigere «լինել աշխույժ», vegere «կենդանացնել, վերակենդանացնել, հարություն տալ», հին անգլ. wacan «արթնանալ» և այլն[14]: Այս իմաստները լավագույնս կարող են բնութագրել Արայի դիցաբանական՝ «մեռնող և հառնող» կերպարի ամենաէական հատկանիշը՝ մահվան քնից զարթնելը, վերակենդանացումը[15]: Ըստ ազգածին ավանդության, Արա Գեղեցիկը զոհվել է Արարատյան՝ Արայի դաշտում (առասպելաբանության մեջ աշխարհագրական օբյեկտները հաճախ կոչվում են այդտեղ զոհված կերպարների անունով), իսկ երկու ուշ գրանցված լեգենդներում ճշտվում է այդ վայրը՝ Արայի լեռան արևելյան փեշին, Արզնի գյուղի տեղում[16]: Նույնիսկ ներկայումս Արայի լեռը նմանեցնում են պառկած մարդու՝ իբր զոհված Արային: Ըստ այդմ, Արագածը, որը նշանակալիորեն ավելի մեծ, հզոր ու բարձր է Արայի լեռից (բարձրությունները, համապատասխանաբար, 4090 և 2577 մ), կարող էր խորհրդանշել նոր, ավելի հզոր էությամբ մահվան քնից արթնացած՝ հարություն առած Արային (հմմտ. նաև հիշյալ լեգենդում լեռների արթնանալու մոտիվը):

Գեղարքունիքի Մեհոգած գյուղը հիշվում է միայն Ստեփանոս Օրբելյանի մոտ (XIII դ.): Եվ ճիշտ է Գ. Ղափանցյանը, որ դա աղավաղումն է Մեհագած անվան, որտեղ առաջին Մեհ մասը ծագում է Միհր աստծու անունից (հմմտ. նույն դիցանվան հետ կապված Մեհևանդակ, մեհեան, մեհեկան ձևերը): Միհրը «Սասնա ծռերում» հանդես է գալիս երկու՝ Մեծ և Փոքր Միհրների կերպարներով, որոնցից երկրորդը էպոսի՝ Արա Գեղեցիկին համապատասխան «մեռնող և հարություն առնող» հերոսն է (նա մտնում է ժայռի մեջ, «Միհրի դռան» հետևում գտնվող երևակայական քարայր և հետագայում, երբ աշխարհը բարեբեր և արդար դառնա, պետք է դուրս գա՝ վերածնվի/վերակենդանանա այնտեղից): Ավելացնենք, որ «Ավեստայի» Միթրա/Միհրին նվիրված հիմներում նա մշտապես կոչվում է «անքուն» և «մշտարթուն» *(axᵛafnəm jaγāuruuåŋhəm*[17]*)*: Ըստ այդմ, Արագածի այս մեկնաբանության օրինակով,

---

[14] **Pokorny** 1959, 1117–1118. **Rix** 2001, 660. Հնդկերեն և լատիներեն բառերի համար տե՛ս համապատասխանաբար **Mayrhofer** 1996, 540–541 և **de Vaan** 2008, 677–678:

[15] Արայի՝ որպես «մեռնող և հառնող» աստվածության վերաբերյալ տե՛ս, օրինակ, **Մատիկյան** 1930. **Ղափանցյան** 1944:

[16] **Ղանալանյան** 1969, 11, 166–167:

[17] Տե՛ս EIr, Mithra I (https://iranicaonline.org/articles/ mithra-i) և Mihr Yašt (http://www.avesta.org/ka/yt10sbe.htm) հոդվածներում:

Միհրի զարթնելու/վերածնվելու մի պատկեր տեսականորեն կարելի է ենթադրել Գեղարքունիքում:

***Վիշապամարտիկ աստծու կայծակե զենքը***

Իրանական առասպելաբանության մեջ Միհրը չար ուժերի տիրակալ Աhրիմանի ամենաhզոր hակառակորդն է. նա սարսափում է hատկապես Միհրի գուրզից, աշխարհի ամենաhզոր ու ամենահաղթական զենքից («Միհր Յաշտ» 6, 132, 141)[18]: «Շահնամեում» Միհրի ցլագլուխ գուրզով է հերոս Ֆերեյդունը հաղթում վիշապ Զահակին (այսինքն՝ հին իրանական առասպելաբանության մեծ օձ-վիշապ Աժի Դահակայի միջնադարյան տարբերակին): Գուրզը իրանական փոխառություն է, (հմմտ. պրսկ. gorz[19] և նրա նախատիպ ավեստ., միջին իրան. varz), որը նույնպես փոխառվել է հայերենում *վազր* ձևով[20]: Առաջ իրանական այդ բառերը հանգեցնում էին հիշյալ հնդեվրոպական *weǵ- արմատին, սակայն ներկայումս, կոկորդայինների հաշվառմամբ, վերականգնվում է նրանից տարբեր *weh$_2$ǵ- «ուժեղ խփել, ջարդել, ջախջախել, կործանել» արմատը (որի *weh$_2$ǵ-ro- «խփող, կործանող» ածանցյալից պիտի ծագեին այդ ձևերը)[21]:

Գուրզը, որպես հերոսի զենք, հանդես է գալիս նաև «Սասնա ծռերում»: «Սասունցի Դավիթ» համահավաք տեքստում գուրզերով կռվի հանրահայտ դրվագը Մեծ Միհերի մենամարտն է Մեծ Մելիքի դեմ, որից հետո նրանք հաշտություն են կնքում[22]: Այդ զենքը բնորոշ է հատկապես Միհերին և կարող է կոչվել «Գուրզն ի Միհերին»[23]: Այս դրվագը բացառիկ է էպոսում. բանասացները սովորաբար այն ներկայացնում են այլ կերպ[24]: Այն դուրս է էպոսի տրամաբանությունից և այնտեղ ակնհայտ է իրանական ազդեցությունը: Այսպես, 1. տարօրինակ է, որ Միհերը կռվում է գուրզով, երբ էպոսի հերոսների մշտական զենքն է իրենց նախնի Սանասարից ժառանգած «Թուր կեծակին»,

---

[18] Eir, s.v. Mihr Yašt.

[19] Այս բառի մասին տե՛ս EIr s.v. (https://iranicaonline.org/articles/gorz):

[20] ՀԱԲ 1, 599. 4, 320–321:

[21] Lubotsky 1981, 135. Rix 2001, 664. հմմտ. Mayrhofer 1996, 492:

[22] ՍԴ, 137:

[23] Մ. Աբեղյան, Կ. Մելիք-Օհանջանյան (խմբ.), Սասնա ծռեր (այսուհետև՝ ՍԾ), հ. Բ, մաս 2, Երևան, 1951, էջ 839: ՍԾ 1951, Բ, II, 839:

[24] Այսպես, մի տարբերակում Միհերը զոհվում է գուրզերով կռվում, տես ՍԾ, Ա, 1094–1095. երբեմն կռվում են առանց գուրզերի, հաճախ էլ առանց կռվի են հաշտվում (օրինակ, ՍԾ, Բ, I, 269–270, 365), կամ Միհերը սպանում է Մելիքին իր գուրզով (ՍԾ, Բ, I, 345–346):

2. սա միակ դեպքն է, երբ Սասունի հերոսը հաշտություն է կնքում հակառակորդի հետ (Միթրա/Միհրի անունը նշանակում է «պայմանագիր, հաշտություն» և նա հաշտության աստված էր. ի միջի այլոց, նման դրվագ կա և արևմտյան միթրայիզմում), և 3. Մհերի գուրզի հիշյալ անվանումն ամբողջությամբ իրանական փոխառություն է՝ մինչև այժմ այդպես է կոչվում զրադաշտական քրմերի ցլագլուխ գավազան/գուրզը՝ Gorz-e Mehr[25]:

Գուրզի հին հնդկական համապատասխանությունն է ամպրոպի աստված Ինդրայի զենքը՝ կայծակի գուրզ *վաջրան*, որով նա հաղթում է իր հակառակորդ Վրտրա օձ-վիշապին (այս առասպելը համապատասխանում է հին իրանական Թրաետաոնայի ու Աժի Դահակայի և «Շահնամեի» Ֆերեդունի ու Զահակի կռվին): Հնդեվրոպական առասպելաբանությունը լավագույնս պահպանվել է հնդկական ավանդույթում: Իսկ մերձավոր իրանականում Զրադաշտի կրոնական ռեֆորմից հետո ռազմի աստվածություն է դարձել Միթրա/Միհրը, որին և անցել է ամպրոպի և ռազմի աստծու զենքը: Հունական առասպելաբանության մեջ հնդիրանական վաջրա/վարզայի զուգահեռը հանդես է գալիս արդեն մթագնած ձևով, հերոս Մելեագրոսի անվան մեջ (որի վերջին մասը ծագում է *wag̑-ro- նախաձևից, *w-ի կանոնավոր անկումով)[26]:

Այսպիսով, Արայի, նրա կերպարային կրկնակ Մհերի և վերջինիս դիցաբանական նախորդ Միթրա/Միհրի կապը հնդեվրոպական «գուրզ, (ամպրոպի) աստծու զենք» իմաստով արմատի հետ գալիս է գոնե հունա-հայ-հնդիրանական միասնության դարաշրջանից (այս երեք ճյուղերը սովորաբար համարվում են իրար սերտ ազգակից): Սակայն հնդկական, իրանական և հունական զենքերը կոչվում են -ro-ով ածանցյալ ձևից, իսկ քննարկվող հայկական տեղանուններում *-գած*-ը արմատական ձև է: Արագածն ունի 350 մ խորությամբ և 3 կմ լայնությամբ հսկա մի խառնարան-կրկես, որի շուրջ են կանգնած լեռան չորս կատարները[27]: Ըստ այդմ, եթե ելնենք արմատի «խփել, ջարդել» իմաստից, ապա Արագածը կարելի է պատկերացնել որպես «Արայի խփած տեղ/խառնարան», իսկ Մեհոգածը՝ «Միհրի խփած» (ինչպես *հարուած* բառի *հար* արմատից ունենք շանթահար, կայծակնահար, դիվահար և այլ նման բառեր):

---

[25] EIr s.v. gorz (https://iranicaonline.org/articles/gorz):

[26] **Watkins** 1995, 408–413.

[27] **Նազարյան** 1974, 678:

Այս կապակցությամբ կարելի է հիշել Նեմրութ լեռան հետ կապված լեգենդները: Ըստ Խորենացու, Հայկը իր սպանած հակառակորդ Բել-Նեբրովթի դիակը հրամայում է տանել իր ոստանը՝ Հարք գավառ և թաղել «ի բարձրավանդակ տեղւոջ» (Խորենացի Ա.ժա): Այդ բարձունքը Նեմրութ (= Բել / Նեբրովթ) լեռն է, Վանա լճի արևմտյան ափին, Մուշի դաշտի արևելքում: Ըստ մի լեգենդի, հայոց թագավորը սպանում է մեծ զորքով իր վրա հարձակված Բելին, հանում Նեմրութ սարի գագաթը և այնտեղ թոնիր շինելով՝ մեջը վառում: Աստված թոնիրը վերածում է լճի: Այլ տարբերակներում Նեմրութը մի մեծ շինություն է կառուցում լեռան վրա և ապստամբում աստծու դեմ: Բայց կայծակներ են խփում, և Նեմրութն իր շինությամբ հանդերձ գետնասույզ է լինում: Լեգենդի «հայոց թագավորը» ակնհայտորեն Հայկն է, իսկ Բել-Նեբրովթ/Նեմրութին կայծակներով պատժողն ի սկզբանե պետք է լիներ ամպրոպի աստվածը, այս համատեքստում՝ Հայկի դիցաբանական նախորդը: Նեմրութի հրաբխային խառնարանը ամենամեծն է Արևելյան կիսագնդում[28], և այդ ահռելի հրաբուխը, անկասկած, համապատասխան առասպելներ ծնող կենտրոն պիտի դառնար:

Այս լեգենդները համեմատելի են Զևսի և Տիփոնի հունական առասպելի հետ: Տիփոնը մի հրեշ է՝ օձ-վիշապ, որին Զևսը կայծակներով հալածում և ի վերջո թաղում է Սիցիլիայի Էտնա հրաբխի տակ, իսկ Հեփեստոսը մրճահարում է լեռան գագաթը (Էսքիլես, «Շղթայված Պրոմեթևս», 365–370, տես հոդվածի բնաբանը): Զևսի և Տիփոնի կռիվը տեղայնացվել է տարբեր վայրերում, բայց հիմնականում Փոքր Ասիայում, Հայկական լեռնաշխարհից ոչ հեռու[29], և առասպելն ինքն էլ ծագումով հիմնականում փոքրասիական՝ խեթական է[30]: Զևսի կայծակները պատրաստող Հեփեստոսը ևս ծագումով փոքրասիական աստված էր[31]: Ըստ այդմ, Բելի առասպելական նախատիպը կարող է պատկերացվել որպես Տիփոնի տիպի մի հրեշ՝ վիշապ, որին լեռան խառնարանում է զնդանում ամպրոպային Զևսին կամ Հեփեստոսին համապատասխան աստվածը[32]: Այս հայ-հունական ընդհանուր պատկերը իր

---

[28] ՀՀՇՏԲ 3, 976 (լեռան վերջին արտաժայթքումները տեղի են ունեցել 1352 և 1441 թվականներին):

[29] **Vian** 1960, 19-23; **Fox** 2008, 288–289:

[30] **Watkins** 1995, 448–459.

[31] Ըստ Վ. Արձինբայի, Հեփեստոսի անունը և կերպարը փոխառված են խեթական-հյուսիսարևմտակովկասյան ավանդույթից, տե՛ս **Ардзинба** 1988, 276–283:

[32] **Պետրոսյան** 2020, 79–80:

հաստատումն է գտնում այն փաստում, որ Հայաստանում, ի տարբերություն Իրանի և մյուս երկրների, Միհրը նույնացվել էր ոչ թե հունական արևի աստվածներ Հելիոսի և Ապոլոնի, այլ, տարօրինակ կերպով՝ Հեփեստոսի հետ: Վերջինս սկզբնապես եղել է գործող հրաբուխների՝ ստորերկրյա կրակի աստված[33], և հետո միայն դարձել դարբնության և արհեստների հովանավոր:

Արագածի խառնարանը ևս հսկայական է, վերածված սառցե լճի (կան և սովորական լճեր, որոնցից ամենամեծի տրամագիծը կազմում է 1150 մ), և հեշտ է պատկերացնել, որ այստեղ, ինչպես և Նեմրութ լեռան լեգենդում, մենք գործ ունենք միևնույն՝ կայծակներով հալածված և լեռան խառնարանում զնդանված առասպելական կերպարի մի տարբերակի հետ: Հնարավոր է պատկերացնել, որ Արայի դիցաբանական նախորդը այստեղ իր կայծակե զենքով հարվածել/ջարդել է լեռը և զնդանել Տիփոնի տեղական տարբերակին, կամ գուցե հենց ինքն է զնդանվածը, ինչպես «Վիպասանքի» և «Սասնա ծռերի» մեռնող և հառնող հերոսները՝ Արտավազդը և Միհրը: Ընդ որում, այդ գործողությունը կոդավորվել է հնդեվրոպական *weh$_2$ǵ- (> *գած*) արմատով: Եվ միանգամից հիշողության մեջ արթնանում են բնաբանում բերված Իսահակյանի բանաստեղծության պատկերը՝ Արագածը կայծակեղեն թրերի վահան: Բանաստեղծի երևակայությունը վերստեղծել է այն նույն պատկերը, որը հին մարդիկ ձևակերպել են որպես առասպել:

Պետք է նշել, որ եթե Նեմրութը ժայթքումներ է ունեցել ընդհուպ մինչև միջնադար, ապա Արագածի խառնարանը ձևավորվել է չափազանց վաղ և նրա հրաբխային ծագումն էլ միարժեք չէ[34]: Բայց ակնհայտ է, որ Հայկական լեռնաշխարհի հին բնակիչներին քաջ հայտնի են եղել հրաբխային խառնարանները, և ամեն մի նման մեծ ու նշանավոր լեռան խառնարան կարող էր իմաստավորվել՝ առասպելականանալ միևնույն՝ լեռան խառնարանում կայծակնահարված և զնդանված կերպարի միջոցով: Հատկանշական է, որ Արագածի վրա են գտնվում բազմաթիվ վիշապ քարակոթողներ, ամենայն հավանականությամբ՝ ամպրոպային առասպելի ծիսական դրսևորումներ[35]: Ընդ որում, այդ վիշապաքարերը հաճախ ներկայացնում են քարե սյուն, որի գագաթին ցլի գլուխ է քանդակված, ինչն ուղղակի հիշեցնում է Միթրա/Միհրի ցլագլուխ գուրզը:

---

[33] ԴԲ, 140:

[34] **Նազարյան** 1974:

[35] Այդ մասին տե՛ս **Պետրոսյան, Բոբոխյան** 2015 ժողովածուի մի շարք հոդվածներում:

***Գրիգոր Լուսավորչի կանթեղը***

Քրիստոնյա հայերի մեջ Արայի կերպարի որոշ գծեր անցել են Գրիգոր Լուսավորչին[36] (հմմտ. հատկապես նրա բանտարկությունը Խոր Վիրապում և դուրս գալն այնտեղից, համադրելի Արայի մահվան և վերածննդի հետ), որի որոշ լեգենդներ կարող են դիտվել այս հոդվածի համատեքստում: Ըստ նրանցից մեկի, երբ Լուսավորիչն աղոթելիս է լինում Արագածի կատարին, նրան գիշերը լուսավորում է երկնքից կախված մի կանթեղ, իսկ մյուսում նա Տրդատ արքայի Հավլունի թուրը նետում է Սեպուհ լեռան վրա, որը մնում է խաչի ձևով օդում կախված, իսկ շուրջը փայլում է Լուսավորչի կանթեղի լույսը[37]: Այդօրինակ լեգենդները սովորաբար հին առասպելների քրիստոնեացած ժառանգներն են: Հավլունի թուրը էպոսի ասացողները նույնացնում են Կայծակի թրի հետ[38], որն էլ իր հերթին, նոր դարաշրջանի ձևափոխություն է (հնում ամպրոպի աստծու զենքն է եղել գուրզը և նրա տարբերակները՝ մուրճը և կացինը, հմմտ. Ինդրայի վաջրան, Միհրի գուրզը, հին մերձարևելյան և հնդեվրոպական ամպրոպի աստվածների կացին/մուրճը)[39]: Հեթանոսական աստծու՝ լեռան վերևում փայլատակող զենքը և նրա քրիստոնեական ժառանգը՝ կանթեղը հիշեցնում են Իսահակյանի տողերը և Տիփոնի ու Նեմրութի լեգենդները: Ըստ այդմ, պետք է կարծել, որ Արագածի վրա փայլող կանթեղը հեթանոսական աստծու գուրզ-կայծակի հետագա քրիստոնեական փոխակերպումն է:

Լուսավորիչն իր կյանքի վերջին տարիներն անց է կացնում Սեպուհ լեռան «Մանեայ այրք» կոչվող քարայրներում (Խորենացի Բ.ղա): Արայի լեռան հարավային կողմում կա մի բնական պատռվածք, որի համար լեռը թուր-

---

[36] Տե՛ս օրինակ **Աղոնց** 2006, 54–59: **Petrosyan** 2002, 111–115.

[37] **Ղանալանյան** 1969, 146, 368:

[38] ՍԾ, Բ, 2, 840:

[39] Գուրզը, մուրճը և կացինը նույն արխայիկ զենքի՝ քարե կացնի տարբերակներ են՝ փայտե կոթ, որի վրա քար կամ մետաղ է ամրացված: Մուրճ/կացնի՝ որպես հին մերձավորարևելյան ամպրոպի աստվածների զենքի մասին տե՛ս **Дьяконов** 1990, 142: Հնդիրանական վաջրա/վազրա գուրզն իր զուգահեռներն ունի հնդեվրոպական աշխարհի հյուսիսարևմուտքում՝ սլավոնական, սկանդինավյան և կելտական ամպրոպի աստվածների զենքը նույնպես մուրճն էր կամ կացինը (իսկ ֆիննական լեզուներում այդ հնդիրանական արմատը փոխառվել է «մուրճ» և «կացին» նշանակություններով, հմմտ. ֆինն. vasara «մուրճ» և մորդվ. užer «կացին»), տե՛ս **West** 2007, 251–254: «Սասնա ծռերում» ևս Թուր Կեծակիի նախնական տարբերակը պետք է լիներ մուրճ/կացինը, որի փոխարինումը թրով նորամուծություն է, նոր դարաշրջանի ներդրում, տե՛ս **Պետրոսյան** 2020, 60:

քերեն կոչվել է Գառնը յարըխ և նման անուններով՝ «Փորը պատռված»): Եվ կա այնտեղ մի քարայր, խորանով, որտեղ և իբր, երկնային հրով վառվում է Լուսավորչի օդից կախված կանթեղը[40]: Լեռնային քարայրի հետ է կապված նաև Միհրը: Կյանքի վերջում նա գնում է Վանա բերդից արևելք գտնվող լեռնագոտու ծայրը՝ «Ագռավու քար», Թուր Կեծակիով ճեղքում այն և մտնում ներս: Ժայռը փակվում է, և Միհրը մնում է ժայռի մեջ «Միհրի դռան» ներսի երևակայական քարայրում: Սա տիպիկ «միթրայական» երևույթ է՝ հռոմեական միթրայիզմում տաճարները կառուցվում էին քարայրի ձևով: Հայաստանում Միհրի կենտրոն Բագառիճի՝ մինչև XX դար հասած որոշ տեղագրական մանրամանություններ նույնպես ենթադրել են տալիս նրա պաշտամունքի՝ ստորգետնյա քարայրում տեղայնացած լինելու հանգամանքը[41]:

Հենց գուրզով զինված և քարայրում բնակվող Միհրի այս կերպարն է եղել նրա՝ նույնպես քարայրի հետ կապված և մուրճով պատկերվող դարբին աստված Հեփեստոսի նույնացման պատճառը: Հայկական վիպական ավանդության մեջ լեռնային քարայրներում «ապրող» մեռնող և հառնող երկու հերոսները՝ Արտավազդը և Փոքր Միհրը միանգամայն համապատասխանում են այս «միթրայական» կերպարին: Իսկ Արայի քրիստոնեական ժառանգ Լուսավորչի՝ Սեպուհ և Արայի լեռների քարայրների լեգենդները ակնարկում են, որ Արան ևս նմանատիպ մի կերպար է եղել:

***Արարատյան դաշտի մյուս լեռները***

Ըստ Կեղծ Պլուտարքոսի (մ.թ. III դ.), Միթրան, ատելով կանանց, բեղմնավորում է մի ժայռ, որից ծնվում է նրա Դիորփոս անունով որդին: Նա հասունանալով մենամարտում է ռազմի աստված Արեսի հետ և սպանվում, ապա՝ աստվածների կամքով փոխակերպվում Արաքսի մոտ գտնվող համանուն լեռան (De Fluviis, XXIII.4)[42]: Այս լեգենդը, անկասկած, պետք է մի տեղական առասպելի արձագանքը լիներ: Դիորփոսի անունը (Δίορφος) թվում է, թե *διώροφος* կամ *διόροφος* «երկտանիք/կրկնատանիք» բառի աղավաղումն է, և այդ լեռը պետք է նույնացվի երկգագաթ Մասիսի հետ[43]: Հաշվի առնելով

[40] **Ղանալանյան** 1969, 146. **Ղափանցյան** 1944, 99:

[41] **Russell** 1994. **Պետրոսյան** 2020, 181:

[42] **Патракова, Черноус** 1990, 272–273.

[43] Մասիսը պարզորոշ կապված է երկվության գաղափարի հետ. նրա անունը միջագետքյան առասպելաբանության Mašu/Masu «Երկվորյակ» լեռան ածանցյալ ձևն է, իսկ նրա մերձակա երկիրը ուրարտական աղբյուրներում կոչվում է Er(i)kuahi (հմմտ. հայ. երկու), տե՛ս **Պետրոսյան** 2020, 162–165:

Արագածի վերաբերյալ ասվածը, կարելի է պատկերացնել, որ Արեսն այստեղ ուղղակի հայոց Արայի հունարեն հաղորդումն է (ի միջի այլոց, կարծիք կա, որ Արան հենց Արեսի հայկական համապատասխանությունն է)[44], իսկ Դիորփոսը, ըստ այդմ, պետք է որ համապատասխաներ Մասիսում զնդանված վիշապ/Արտավազդին:

Ըստ Վ. Իվանովի և Վ. Տոպորովի, հնդեվրոպական ամպրոպային առասպելում աստծու հակառակորդ օձ-վիշապի անունը կազմվում է *wel- արմատով[45]: Սրա հայերեն ժառանգն է *գեղ*-ը, որով հնում, մինչև իրանական *վիշապ* բառի փոխառությունը, պիտի կոչվեր առասպելական օձ-վիշապը: Հայկական անվանաբանության մեջ *գեղ*-ով սկսվող տեղանունները մեծագույն խտությամբ հանդիպում են Գեղամա լեռներում՝ Գեղաքունի (ներկայումս՝ Գեղարքունիք) գավառում՝, որն ուրարտական աղբյուրներում մ.թ.ա. VIII դարից ավանդված է որպես «Uelikuni/Uelikuḫi երկիր», ինչը ցույց է տալիս, որ այս անվանումները ծագում են հին *wel- նախաձևից: Նախապատմական Հայաստանի առանձնահատուկ հուշարձանները՝ վիշապ քարակոթողները առավել խտությամբ հանդիպում են հենց Գեղամա լեռներում (150-ից շուրջ 60-ը), որոնց երկու ամենամեծ խմբերը գտնվում են Գեղ լեռան վրա (Ազատ գետի ակունքում) և Գեղի ամրոցի մերձակայքում: Այս և մի շարք այլ տվյալներ ցույց են տալիս, այս տեղանունները կապված են առասպելական վիշապի անվան հետ[46]:

Այսպիսով, և՛ Մասիսը, և՛ Գեղամա լեռները կապվում են Արագածի՝ «Արայի (զենքով) հարված» ստուգաբանությունը հիշեցնող առասպելների հետ (Մասիսը ստեղծվում է Արեսի (իմա՝ Արայի) սպանած հերոսի մարմնից, իսկ Գեղամա լեռներն ուղղակի կապված են վիշապամարտիկ աստծու կայծակե զենքով հալածվող վիշապի անվան հետ. (հմմտ. և Մեհոգած գյուղանունը Գեղարքունիքում):

### *Արարատյան դաշտ*

Ուրարտական արձանագրություններում Արարատյան դաշտում բնակվող հիմնական ցեղը և նրա երկիրը կոչվում էին ’Aza կամ ’Aṣa, այսինքն՝ Vaza/Vaṣa (ուրարտ. սեպագիր ’a-ն կարդացվում է va կամ wa, իսկ za և ṣa վանկերը հաղորդվել են միևնույն նշանագրով): Այդ երկիրը ներառում էր Արագածոտնից

[44] **Մատիկյան** 1930, 314–318. ՀԱնԲ Ա, 262–264:

[45] **Иванов, Топоров** 1974, 31–75, 101.

[46] **Петросян** 1987. **Պետրոսյան** 2019:

Երևան ընկած տարածքները[47]: Կողմնակի տվյալներ չկան այս ցեղանուն/-երկրանունը ստուգաբանելու համար, բայց հնարավոր է պատկերացնել, որ այս ցեղը և երկրամասը ևս կոչվեին հնդեվրոպական նույն արմատով, հնագույն հայերեն **Վածա*, հանդիպող -ā < -eh$_2$ ածանցով (ուրարտ. ṣ-ն համապատասխանում է միայն հայ. ծ-ին): Ըստ Յ. Պոկոռնու, նույն իմաստն ունի հունական և հռոմեական աղբյուրներում ավանդված կելտական *բոյ* ցեղանունը՝ լատ. Boius, հոգնակի՝ Boii, հուն. Boioi, հնդեվրոպական *bheyH- «խփել» արմատից (այդ ցեղանունից են ծագում հետագա Բոհեմիա և Բավարիա երկրանունները), հմմտ. և իլիրիական Boioi և հունական Boiōtoi (հոգնակի) ցեղանունները[48]:

Այս համատեքստում քննարկենք Լուսավորչի հայտնի տեսիլքը (Ագաթանգեղոս 735–737): Լուսավորչին երևում է երկնքից իջնող մարդկերպ մի ահավոր կերպարանք, ձեռքին ոսկե մուրճ/կռան (բնագրում՝ *ուռն*), որով խփում է գետնին մայրաքաղաք Վաղարշապատի կենտրոնում: Մեծ ու հզոր հնչյուններ են լսվում անդունդների սանդարամետից (դժոխք) և ամբողջ երևացող երկիրը հավասար դաշտաձև հարթվում է («հարթ հաւասար դաշտաձև յատակեցաւ»): Քաղաքի մեջ, արքունի ապարանքի մոտ, երևում է մի ճախարակաձև ոսկե խարիսխ, խոշոր բլրի մեծությամբ, նրա վրա՝ բարձր հրեղեն սյուն, վրան ամպե խոյակ՝ լուսեղեն խաչով: Այս լեգենդը ևս, ինչպես նախորդները, հեթանոսական առասպելի քրիստոնեացած մի տարբերակ է ներկայացնում: Ոսկե կռանով երկրին հարվածելը, որից հետո սանդարամետից հզոր հնչյուններ են լսվում, ներկայացնում է վիշապամարտիկ աստծու՝ իր զենք-կայծակով ստորերկրայքի տիրակալ օձ-վիշապին խփելու դրվագը: Ընդ որում, հայ իրականության մեջ առաջին և միակ անգամ հիշվում է ամպրոպի աստծու արխայիկ զենքը՝ մուրճ/կռանը, իր բնիկ հայկական անունով՝ *ուռն*[49]: Սա ակնհայտորեն «աշխարհի կենտրոնում» տեղայնացվող տիեզերածին առասպելի մի տարբերակ է. կռանով զինված դիցաբանական կերպարը՝ աստվածը, խփում է մայրաքաղաքի կենտրոնին (առասպելաբանական համատեքստում՝ երկրի և այդպիսով՝ աշխարհի կենտրոնին), որտեղից, որպես հետևանք, բարձրանում է տիեզերական հրեղեն սյունը՝ «աշխարհի առանցքը»: Մայրաքաղաքը՝ երկրի կենտրոնը, գտնվում է երկրի կենտրոնական նահանգի՝ Այրարատի սրտի՝ Արարատյան՝ Արայի դաշտում:

[47] КУКН, 499–500.

[48] **Pokorny** 1959, 117–118. Տե՛ս և **Rix** 2001, 72:

[49] **Ջահուկյան** 2010, 751:

Եվ հարվածից հետո երկրի տեսանելի մասի դաշտաձև հարթվելն ակնարկում է հենց այդ դաշտի արարումը երկնքից իջած աստծու՝ մուրճով երկրին խփելու հետևանքով[50]: Իսկ խաչով պսակված հրեղեն սյունը համապատասխանում է Արագածի և Սեպուհ լեռան Լուսավորչի կանթեղին:

Այսպիսով, ոչ միայն Արագածի խառնարանը, Արայի լեռան պատռվածքը և Սեպուհի քարայրները, այլև Արարատյան կամ Արայի դաշտը ևս, ըստ ավանդության ստեղծվել է աստծու զենքով՝ մուրճ/գուրզով հարվածի (հնդ-եվրոպական *$weh_2ǵ$-) արդյունքում[51]:

### *Եզրակացություններ*

Արագածի բերված երկու ստուգաբանություններն էլ («ուժեղ, ժիր լինել, արթնանալ» և «հարվածել, ջարդել» արմատներից) տեսականորեն հնարավոր են: Թերևս չի բացառվում նաև, որ այդ արմատները իրար հետ ինչ-որ կերպ կապված լինեն: Ընդհանրապես, առասպելաբանության մեջ անունները կարող են իմաստավորվել նույնահունչ, բայց տարիմաստ արմատներով: Ինչևէ, դիցաբանական կայծակե զենքի, նրանով լեռներում զնդանված հրեշավոր օձ-վիշապին խփելու հին առասպելը, Մասիսի և Գեղամա լեռների առասպելաբանական նյութը, Լուսավորչի կանթեղի, Հավլունի թրի և կռանով կերպարի լեգենդները առավելապես ակնարկում են Արագածի, Արայի լեռան և Արայի դաշտի՝ դիցաբանական զենքի հարվածի հետևանքով ստեղծված լինելը, որտեղ հարվածողը կամ հարվածն ընդունողը (եթե հաշվի առնենք Արայի զոհվելու առասպելը) Արան է:

---

[50] «Աշխարհի կենտրոնում» տեղայնացվող տիեզերածնության առասպելների առանցքային դերի վերաբերյալ տե՛ս **Элиаде** 2000, 30–34, 150–153. Լուսավորչի տեսիլքի վերաբերյալ այս համատեքստում՝ **Աբրահամյան** 2001, 363–364:

[51] Այս համատեքստում քննարկենք երկու անձնանուն. 1. Ուռնայր. հայտնի են այս անունով Աղվանքի երկու արքա և «անհայտ ոմն, որ շինել է Մելիտինե քաղաքը»: Այն ստուգաբանվում է որպես հայ. *ուռն* + *այր* «մուրճով զինված մարդ» (ՀԱնԲ 4, 204): Նրանցից առաջինը այդ հայկական անունը ստացած պիտի լիներ Հայաստանում, Լուսավորչի կողմից մկրտվելուց հետո (Կաղանկատվացի Ա.թ. Լուսավորիչը կարող էր նրան կոչել ըստ իր տեսիլքի հերոսի), մյուսը՝ կրել է իր այդ նախորդի անունը: Իսկ Մելիտինե քաղաքի (առասպելաբանական) կառուցողը, իհարկե, չէր կարող աղվան լինել: 2. ’Azā կամ ’Aṣā, հայտնի է Վերին Անձավի ուրարտական ամրոցի զինվորների ցուցակից (Salvini 2012, CT-An-$1_{16}$), որը, ակնհայտորեն, պիտի կապվի նույն տեղանվան հետ (հմմտ. օրինակ Abilianihi տեղանունը և Abiliuqi անձնանունը): Հետաքրքիր է, որ մեզանում էլ երբեմն գործում է տեղանունից մականուն ստեղծելու կաղապարը. բանակում գավառցի (խոսակցականով՝ քյավառցի) զինվորներին երբեմն ուղղակի Քյավառ են կոչում:

## ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

**Աբրահամյան Լ.** 2001, Ձոհի մարմնից աճող երկնային տաճարը. Գրիգոր Լուսավորչի տեսիլքը ազգաբանական տեսանկյունից, Հայոց սրբերը և սրբավայրերը, Երևան, «Հայաստան», 357–360:

**Ադոնց Ն.** 2006, Երկեր, հ. Ա, Երևան, Երևանի համալսարանի հրատ., 652 էջ:

**Աղայան Է.** 1974, Բառաքննական և ստուգաբանական հետազոտություններ, Երևան, ՀՍՍՀ ԳԱ հրատ., 168 էջ:

**Աղայան Է.** 1986, Ակնարկներ հայոց տոմարների պատմության, Երևան, ՀՍՍՌ ԳԱ հրատ., 300 էջ:

**Բրուտյան Գ.** 1997, Օրացույց հայոց, Էջմիածին, Մայր աթոռի տպարան, 560 էջ:

**Բոտվիննիկ Մ.** և այլք 1985, Դիցաբանական բառարան (ԴԲ), Երևան, «Լույս», 264 էջ:

ՀՀՇՏԲ 3 – Թ. Հակոբյան, Ս. Մելիք-Բախշյան, Հ. Բարսեղյան 1991, Հայաստանի և հարակից շրջանների տեղանունների բառարան, հ. 3, Երևան, Երևանի համալսարանի հրատ., 992 էջ:

Մովսիսի Խորենացւոյ պատմութիւն հայոց, Երևան, 1991, 486 էջ (= Տփղիս, 1913):

Մովսես Կաղանկատվացի 1969, Պատմություն Աղվանից աշխարհի Երևան, «Հայաստան», 323 էջ:

**Աճառյան Հ.** 1971-79, Հայերեն արմատական բառարան (ՀԱԲ), հ. 1-IV, Երևան, Երևանի համալսարանի հրատ.:

**Հանեյան Ա.** 2005, «Գոտի» բառանվան ստուգաբանության շուրջ, Նյութեր մաշտոցյան գրերի 1600-ամյակին նվիրված գիտաժողովի (17-18 հունիսի, 2005), Երևան, ՀՍՍՌ ԳԱ հրատ., էջ 76-86:

**Ղանալանյան Ա.** 1969, Ավանդապատում, Երևան, ԳԱ հրատ., 530 էջ:

**Ղափանցյան Գ.** 1939, Ընդհանուր լեզվաբանություն, հ. 1, Երևան, Պետհամալսարանի հրատ., 356 էջ:

**Ղափանցյան Գ.** 1944, Արա Գեղեցիկի պաշտամունքը, Երևան, ԳԱ հրատ., 184 էջ:

**Մատիկյան Ա.** 1930, Արա Գեղեցիկ, Վիեննա, Մխիթարյան տպարան, 352 էջ.

**Նազարյան Խ.** 1974, Արագած, Հայկական Սովետական Հանրագիտարան, հ. 1, Երևան, 720 էջ:

**Պետրոսյան** 2014, Հայոց արմեն ցեղանունը, Պատմաբանասիրական հանդես, 2014, 3, էջ 224-236:

**Պետրոսյան Ա.** 2017, Հայ ժողովրդի ծագման խնդիրը, Երևան, «Անտարես», 256 էջ:

**Պետրոսյան Ա.** 2019, Հին հնդեվրոպական օձ-վիշապը հայկական ավանդույթում և վիշապ քարակոթողները, Վիշապը հեքիաթի և իրականության սահմանին, Երևան, ՀԱԻ հրատ., 146–156:

**Պետրոսյան Ա.** 2020, Հայկական էպոսի հնագույն ակունքները 2, Երևան, ՀԱԻ հրատ., 264 էջ:

**Պետրոսյան Ա., Բոբոխյան Ա.** (խմբ.) 2015, Վիշապ քարակոթողները, Երևան, «Գիտություն», 420 էջ:

**Ջահուկյան Գ.** 2010, Հայերեն ստուգաբանական բառարան, «Ասողիկ», 820 էջ:

**Սասունցի Դավիթ.** հայկական ժողովրդական էպոս (ՍԴ), Երևան, Պետ. հրատ., 1939, 386 էջ:

**Աբեղյան Մ., Մելիք-Օհանջանյան Կ.** (խմբ.), Սասնա ծռեր (ՍԾ), հ. Ա, Բ, մաս 1, 2, Երևան, Պետ. հրատ., 1939–51:

**Ардзинба В.** 1988, К истории культа железа и кузнечного ремесла (почитание кузницы у абхазов), Древний Восток: этнокультурные связи, «Наука», 263–306.

**Дьяконов И.М.** 1990, Архаические мифы Востока и Запада, Москва, «Наука», 248 с.

**Иванов В.В., Топоров В.Н.** 1974, Исследования в области славянских древностей, Москва, «Наука», 320 с.

**Капанцян Г.** 1975, Историко-лингвистические работы, т. II, Ереван, изд-во АН, 542 с.

КУКН – Арутюнян Н.В. 2001, Корпус урартских клинописных надписей, Ереван, «Гитутюн», 542 с.

**Мелетинский Е.М.** 1986, Введение в историческую поэтику эпоса и романа, Москва, «Наука», 320 с.

**Патракова В.Ф., Черноус В.В.** 1990, Кавказ и Дон в произведениях античных авторов, Ростов-на-Дону, «Русская энциклопедия», 400 с.

**Петросян А.Е.** 1987, Отражение индоевропейского корня *u̯el- в армянской мифологии, Вестник общественных наук Арм. ССР, 1, с. 56–70.

**Элиаде М.** 2000, Избранные сочинения, Москва, «Ладомир», 414 с.

**Ahyan S.** 1982, Les débuts de l'histoire d'Arménie et les trois fonctions indo-européennes, Revue de l'histoire des religions CIC-3, 251-271.

Eir – Encyclpaedia Iranica. https://iranicaonline.org/.

**Fox R.L.** Travelling Heroes: Greeks and Their Myths in the Epic Age of Homer, New York, International Edition, 2008, 513 p.

**Lubotsky A.M.** 1981, Gr. pḗgnumi: Skt. pajrá-and loss of laryngeals before mediae in Indo-Iranian, Münchener Studien zur Sprachwissenschaft 40, 133-138.

**Mayrhofer M.** 1996, Etymologisches Wörterbuch des Altindoarischen, Bd 2, Heidelberg, C. Winter, 837 S.

**Petrosyan A.** 2002, The Indo-European and Ancient Near Eastern Sources of the Armenian Epic, Washington, Instituts for the Study of Man, 236 p.

**Pokorny J.** 1959, Indogermanisches Etymologishes Wörterbuch, B. I, Bern, München, Francke, 770 S.

**Rix et al.** 2001, Lexikon der Indogermanischen Verben, Wisbaden, Ludwig Reichelt, 823 S.

**Russell J.** 1994, On the Armeno-Iranian Roots of Mithraism, Studies in Mithraism, Rome, "L'Erma" di Bretschneider, 183–193.

**Salvini** 2012, Corpus die testi urartei, vol. IV. Iscrizioni su bronzi, argilla ealtri supporti nuove iscrizioni su pietra paleografia generale, Istituto di studi sulle Civiltà dell'Egeo e del Vicino Oriente, Roma, 323 p.

**de Vaan M.** 2008, Etymological Dictionary of Latin and the other Italic Languages, Leiden, Boston, 2008, 825 p.

**Vian F.** 1960, *La triade des rois d'Orchomène: Étéoclès, Phlégyas, Minyas,* Hommages à Georges Dumézil, Bruxelles, Latomus, 215–224.

**Watkins K.** 1995, How to Kill a Dragon, New York, Oxford, Oxford University Press, 640 p.

**West M.** 2007, Indo-European Poetry and Myth, Oxford, Oxford, Oxford University Press, 540 p.

## АРАГАЦ: НАЗВАНИЕ И МИФ

ПЕТРОСЯН А.

### Резюме

***Ключевые слова:*** Арагац, Ара Прекрасный, гора Ара, поле Ара, Григорий Просветитель, индоевропейское языкознание, сравнительная мифология.

Арагац является одной из гор, окружающих Араратскую долину, и центром исторической Великой Армении. Возвышающаяся рядом гора и сама долина назывались именем Ара Прекрасного – «умирающего и воскресающего» бога армянской мифологии, который в этногоническом предании выступает в образе мифологического патриарха армян, а в христианской традиции его наследником стал проповедник христианства в Армении св. Григорий Просветитель. В статье предлагается новая этимология Арагаца – имя бога Ara + gac (от индоевропейского *weh$_2$ǵ- «бить, громить»). Этим корнем обозначались vajra – оружие-молния древнеиндийского бога грозы Индры и vazra – палица иранского бога Митры. Анализ мифов и легенд об Ара Прекрасном, св. Григории, названных горах и долине подтверждает данную этимологию: в восстанавливаемом космогоническом мифе горы и долина были созданы ударом бога мифологическим оружием о землю.

## ARAGATS: THE NAME AND THE MYTH

PETROSYAN A.

### Summary

***Key words:*** Aragats, Ara the Handsome, Mountain of Ara, Field of Ara, Gregory the Illuminator, Indo-European linguistics, comparative mythology.

Aragats is one of the mountains surrounding Ararat Valley, the center of historical Greater Armenia. The nearby mountain and the valley itself were named after Ara the Handsome, the "dying and resurrecting" god of Armenian mythology, who in ethnogonic tradition presents the image of the mythological patriarch of Armenians. In Christian tradition his heir was St. Gregory the Illuminator, the propagator of Christianity in Armenia. In this paper a new etymology for Aragats is proposed – the name of the god Ara + gac (from the Indo-European *weh$_2$ĝ - "smash"). This root used to name *vajra*, i.e. the lightning weapon of the ancient Indian god Indra, and *vazra*, the mace of the Iranian god Mitra. Our analysis of the myths and legends about Ara the Handsome, St. Gregory, the mountains and the valley comes to confirm the proposed etymology, particularly that in the reconstructed cosmogonic myth those mountains and valley were created through God’s weapon strike on the earth.

**LUIZA GASPARYAN***
*Candidate of philological sciences*
*Scientific researcher at the*
*M. Abeghyan Institute of Literature, NAS RA*
*Lecturer at Foreign Languages and Literature, EIU*
Luisa.gasparyan83@gmail.com
DOI: 10.54503/1829-4073-2022.3.186-196

# ARTSAKH IN THE WESTERN TRAVELOGUES (UP UNTIL THE LATE 19TH C.)

***Key words***: Artsakh (Karabagh), travelogue, Armenians, testimony, Shushi, Russian Empire, prosperity.

***Introduction***

With its greenish landscapes, serene and proud monasteries, hospitable and positive atmosphere, Artsakh always remains consistent and unbreakable in the turmoil of cataclysmic events. Artsakh is organically intertwined with Armenia in all spheres; historical, religious, cultural-spiritual, sociopolitical and linguistic. The Armenian linguist Hr. Acharyan, in one of his scientific works, underlined that Artsakh dialect is one of the largest Armenian dialects[1]. Historian Leo qualified Artsakh dialect as a rich ancestral heritage, strong, courageous and reinforced with mountainous flavor[2]. In other words, diachronically and synchronically Artsakh has a profound and unique significance in preserving the roots and heritage of the Armenian ethnicity and its identity.

The research aims at revealing and illustrating Artsakh through the light of Western travelers' missionaries, diplomats' notes and travelogues up to the end of the 19th century, thus underlining the importance of Artsakh Studies from the viewpoint of literary and cognitive-linguistic perspectives. One cannot fail to notice that Artsakh Studies should be on the agenda of proficient experts, historians and

---

* *Հոդվածը ներկայացվել է 10.10.22, գրախոսվել է 17.10.22, ընդունվել է պպագրության 01.12.22:*

[1] **Աճառյան** 1911, 61:

[2] **Լեո** 1967:

literary critics, since there are many published works and hypotheses which create an incredible atmosphere and put forward pseudo-scientific information.

The study is carried out within the scope of spatial-temporal domain taking into focus the travelogues of different centuries and their textological features, as well as the dynamism and chronology of the authors' thoughts. On the other hand, the research of different travelogue texts helps us reveal the cognitive-linguistic utterance as unified objective materials and entities, which revolve around Artsakh.

The article is a first attempt to shed light on the studies dedicated to Artsakh. The mechanisms of travelogue analysis are based on the observations and interpretations of travelers, missionaries, diplomats, and are compared and illustrated within the scope of a single semantic-conceptional spiral. The data will more or less enrich the historical-culturological material about Artsakh especially by assembling the Western scientists' informative facts of different centuries.

***Historical Evidence***

An abundance of testimonies about Artsakh (Karabagh) in Armenian historiography, referring to religious, geographical, cultural-spiritual, sociopolitical peculiarities, has existed since ancient times. In the IV-V centuries the adoption of Christianity and the Golden Age period led to spiritual and cultural development, which fundamentally shaped the identity of Armenians[3]. Referring to the historical geography of Armenia, Robert H. Hewsen stated that Greater Armenia consisted of fifteen provinces, and one of them was Artsakh[4].

Strabo in his famous work "Geography" informed us about Artsakh and its indispensable organic connection with Great Armenia. He indicated that Artsakh was a fertile and developed country with strong military forces, like, for example, cavalry[5].

One cannot fail to observe that alongside with the toponym Artsakh, another toponym – Karabagh – is also widely spread. According to some linguists, Artsakh and Karabagh have similar associative significance; the toponym comes from the ancient times, and traditionally derives from the roots *Ar* (*Ar*manian) (the Armenian ancestor Hayk Nahapet's son) and *tsakh* – tree (the indication of the natural environment of Artsakh, which is rich in forests). There is still another

[3] **Lang** 1978/1980.
[4] **Hewsen** 2004, 15.
[5] **Страбон** 1964, кн. XI, § 4.

interpretation which consists of the roots *Sar* – mountain *(*because of the mountainous landscape) and *tsakh* – tree; in the course of time the sound [*s*] from *sar* disappeared, hence the toponym *Artsakh* occurred[6]. The geographical term *Karabagh* is comparatively new and attested in Persian and Georgian sources of the XIV–XV centuries. There are different hypotheses and versions of the etymology of the name Karabagh. According to the circulating assumption and interpretations, the geographical name originated from the Altaic word *K'ara* – black, a Persian word *bagh'* – garden[7]. Whereas K. Gunn tended to interpret *K'ara* with *dark green* and *dense*[8] connotative overtones. The same assumption had Ghevond Alishan who emphasized that the world of Artsakh is called Karabagh by foreigners, because of its *dense green forests and gardens*[9].

Due to their courageous spirit and patriotism, Artsakh Armenians preserved their independence throughout history and were never subjected to different yokes. Still in some historical periods it merely paid symbolic tributes to governors. At the end of the XVI century an autonomous administrative-political government system called "Melikutyun" (Melikdoms of Karabagh) was established in Artsakh.

In 1805 Artsakh voluntarily involved into the Russian Empire, and this was an important historical event for Artsakh Armenians (fixed later by the Treaty of Gulitstan, 1813); on the one hand it gave the people a reliable guarantee towards devastating invasions, on the other hand it led the Melikutyun (Melikdoms of Karabagh) towards prosperity and enhancement of the cultural-spiritual potential. In 1868 Artsakh (Karabagh) which was part of Elisavetapol gubernia had the following essential counties; Shushinsky, Dzhebrailsky, Dzhevanshirskiy[10]. The unification of Artsakh with Russia had an important historical significance, which contributed to the development of commerce, craft and in general the economic environment. At the same time the creation of infrastructures in Artsakh raised the level of the social-economic life of the average people as well as improved the situation of cultural-spiritual education.

---

[6] **Բեկնազարեանց** 1886, 148:

[7] **Мкртчян** 1988; **Հակոբյան, Մելիք-Բախշյան, Բարսեղյան** 1991, 520–521:

[8] **Ган** 1909, 70–71.

[9] **Ալիշան** 1993, 13:

[10] **Мкртчян** 1988; **Ուլուբաբյան** 1994:

«Նկարագրել և ծովի շուրջը: Թափառանքը:

Մեջը մտնեն՝ աշխարքի վերջը. որքան թարմ են, որքան չքնաղ են քու աչերը (1895 հուլիսին գրած): Ընկերիս պատահելը անտառում - քամին թափառում էր նոճիների մեջ, ես շրջում էի գերեզմաններում...

Գրվածքիս մեջը - անապատում մի գիշերվա երկար մոնոլոգ: - Գիշերվա երգ:

Գիրքը նվեր բոլոր «Տանջվող-ես»-երին.

Իմ Աստված - ես - սիրո երգը,

Ողջույն իմ «ես»-ին, ողջույն իմ «հոգուն»:

Վերջին գլուխները աշակերտների հետ պիտի խոսել»[65]:

Թեև դրանցում բացակայում է ստեղծագործության վերնագիրը, սակայն, ինչպես վերևում նշված «կերպարների», այնպես էլ երկի հայեցակարգային այլ տարրերի հետ զուգադրումները հիմք են տալիս ամրագրելու, որ սրանք վերաբերում են «Յոթն օր...»-ին: Հիշատակված «Գիշերվա երգ»-ը շատ հավանական է՝ Ա բնագրի անվերնագիր VI մասի սկզբի չափածո մեծ հատվածն է՝ հերոսի՝ տիեզերքի Ոգի-Հոգու, Հանճարի, Գերմարդու, առանցքային գաղափարներն ու կենսադրույթները մութ ու լուռ անապատում հնչեցնող մենախոսությունը[66]: «-Վերջին գլուխները աշակերտների հետ պիտի խոսել» գրառումն էլ ըստ երևույթին աշակերտների՝ Ոգի-Աստղերի, Ազատ Ուխտի ուխտավորների հետ ուսուցչի՝ Նոր-Կրոնի, Ազատ-Ուխտի Մեծ վարդապետի, Վեհ-Երգի, Վայրի-Կտակի բանակի առաջնորդի, Նոր-Կրոնի Սրբության զինվորի՝ Ա բնագրի XI. «Վրեժի երգ» մասի վերջին ոչ մեծ հատվածը զբաղեցնող երկխոսությունը[67] գրքի նաև այլ, նոր կառուցվածքային բաղադրիչների տեսքով ընդարձակել-ծավալելու ծրագրի մասին է:

Միաժամանակ հարկ է նշել, որ չի հաջողվել գտնել վերոհիշյալ գրառումներում ամրագրված ծրագրային մյուս կետերին առնչվող տեղեկություններ, նյութեր, ինչպես նաև հիշատակվող, ըստ Իսահակյանի, ավարտուն գործերը կամ կտորները, որոնք կլրացնեին գիրք-նախագծի ընդգրկումների պատկերը:

Հետագա տարիների գրառումները վկայում են, որ հեղինակը շարունակել է աշխատել «Յոթն օր ապատում, յոթն օր անապատում» «գրանդիոզ» «հանրամարդկային» նախագծի վրա: Ինչպես արդեն նշվել է, 1898 թ. օգոստոսին ամփոփել է արդեն արվածը, հստակեցրել երկի հայեցակարգը, սա-

[65] **Իսահակյան** 1977, 237–238:

[66] **Իսահակյան** 2014, 351–352:

[67] **Իսահակյան** 2014, 368–369՝ 187–195-րդ պարբերություն:

կայն չի վերջավորվել-ավարտվել գերմարդու իր փիլիսոփայություն-վարդապետությունը մշակելու և ինքնահատուկ գեղարվեստական կերպի ու ձևի բերելու ընթացքը: Կարճ ժամանակ անց Իսահակյանի փիլիսոփայության և գեղագիտության մեջ առանցքային է դարձել «Տիեզերական զանգ» խորհրդանիշ-հայեցակարգը, որը նույնանուն բանաստեղծությամբ[68] 1899 թ. սեպտեմբերին գեղարվեստականորեն ձևակերպվելուց հետո էլ գերիշխել է հեղինակի՝ տիեզերքի, մարդու և նրանց փոխհարաբերությունների գերբարդ համակարգին առնչվող մտորումներում, վերլուծություններում, եղել տիեզերք-անհատ-մարդկային հանրույթ փոխառնչության և փոխներգործության էությունը քննելու, ճանաչելու և պատկերը կերտելու հեղինակի հիմնաքարը, որի վկայությունն է նաև նույն վերնագրով մեկ այլ բանաստեղծության գոյությունը և դրան անդրադարձը 1919 թ.[69]:

Այսպիսով՝ արձանագրենք, որ 1900 թ. որոշակիորեն սրբագրվել է «Յոթն օր**...**»-ի հայեցակարգը. հերոս հանճար-գերմարդը դարձել է հրեղեն մարդ («Հանճարը հրեղեն մարդ է (Նիցշեի übermensch), հերոս է. հերոսը հրեղեն մարդ է»[70]), տիեզերական զանգ («Տիեզերքը զանգ է. ես լեզվակն եմ, հոգիս զանգ է, մարդը զանգ է, ամբոխը քարե զանգ է, հոգին զանգ է... զանգը զանգ է»[71]) մարգարե՝ այսպիսի առաքելությամբ. «Թափառել ժողովրդի մեջ և քարոզել նրան, հայտնել զանգի ղողանջները և մարգարեական ցնորքից ճաճանչներ, ճառագայթներ գցել նրա վրա և ճանապարհ բանալ դեպի մարգարեական ցնորքը՝ լավ, պայծառ, ազատ օրերի նոր աշխարհը, նոր ապագան: Թափառել բնության մեջ, երգել բնությունը և ծովերի, անտառների, անապատների մեջ խորհել տիեզերական գաղտնիքների, մտքերի վերա, խորհել տիեզերքի և կյանքի վերա, և լսելով տիեզերքի հավերժական ղողանջները՝ քուն մտնել տիեզերական երազների մեջ...»[72]: 1903 թ. վերստին ազդարարվում է ճշմարտություն որոնելու նոր սկզբի մասին. «Ո՞վ եմ ես.- ճամփորդ, աշխարհի ճամփորդ, տիեզերական ճամփորդ, զանգի ղողանջը երգող, և գնում եմ ճշմարտություն գտնելու: Ազգերի հոգու մեջ կսուզվեմ, նրանց դարերի

---

[68] Խոսքը 1899 թ. սեպտեմբերին գրված և նույն թվականին տպագրված «Տիեզերական զանգ» բանաստեղծության մասին է: (Տե՛ս **Իսահակյան** 2003, 207):

[69] Խոսքը վերաբերում է «Տիեզերական զանգ (Նրա ղողանջները)» անտիպ բանաստեղծությանը, որի մի տարբերակը թվագրված է «1919, հուլիսի 6» (Տե՛ս **Իսահակյան** 2011, 185, 507–508):

[70] **Իսահակյան** 1977, 268:

[71] **Իսահակյան** 1977, 276:

[72] **Իսահակյան** 1977, 277:

պատմական հոգու մեջ, և օրենքներ կհանեմ, վեհություններ կծծեմ, ճշմարտություն, նոր հավատ, նոր կրոն, նոր գեղեցկություն գտնելու կերթամ»[73]:

Եվ ուրեմն, հավանական է, որ տարիների կենսական, հոգեմտավոր ճանաչողության փորձի, ստեղծագործական որոնումների արդյունքում «Յոթն օր**...**» նախագիծը փոխակերպվել է «Մարգարեն (Զանգը, Կտակը)»-ի կամ «Նոր կտակ (Տիեզերական Զանգ)»-ի: Համենայն դեպս, 1911–1932 թթ. «Գրելիք նյութեր»-ի ցանկերում[74] նշված այս վերնագրերի, որպես բանալի բառերի, էական առնչակցությունը «Յոթն օր**...**»-ի առանցքային, հիմնարար գաղափարին և հայեցակարգային էությանը հնարավորություն են ընձեռում ավելի քան հիմնավոր համարելու վարկածը: Այդ փոխակերպումը չէր կարող չհանգեցնել երկ-նախագիծը վերկառուցելուն և ստեղծագործական ծրագրերից «Յոթն օր ապատում, յոթն գիշեր անապատում» վերնագիրը դուրս մղելուն: Սակայն ասվածը բնավ չի նսեմացնում, թեև անավարտ, սակայն տարիների աշխատանքով գոյացած-ձևավորված չափազանց ինքնատիպ և կարևոր նախագծի դերն ու նշանակությունը հեղինակի գեղարվեստական-փիլիսոփայական ժառանգության մեջ: Իսկ «Յոթն օր**...**»-ի լրացված տեքստը և համալրված համատեքստը, որ ընդգրկում-ներառում է չափածո և արձակ, տպագրված և անտիպ, ավարտուն և անավարտ բազմաթիվ ստեղծագործություններ, խոհեր, վերլուծություններ, կարող են ոչ միայն օգնել առավել համակողմանի ընկալելու նախագիծը, այլև նորովի ընթերցելու հեղինակի արդեն հայտնի գործերը, գրառումները և վերջապես, բացահայտելու կյանքի՝ անհատական, անձնական, ազգային և համամարդկային փորձություններով ու մարտահրավերներով գերհագեցած տվյալ փուլում երիտասարդ հայ գրող, բանաստեղծ, մտածող, գործիչ Ավետիք Իսահակյանի տիեզերք-մարդ չափազանց յուրօրինակ մոդելը՝ դրանում իր գլխավոր, համամարդկային դերակատարմամբ, և գնահատելու համարժեք գեղարվեստական, փիլիսոփայական, քարոզչական խոսքի բազմազան-բազմաձև համազուգակցմամբ այն պատկերելու համարձակ փորձը:

***Եզրակացություն***

Ավ. Իսահակյանի «Յոթն օր ապատում, յոթն գիշեր անապատում»-ը բացառիկ ստեղծագործական նախագիծ է ոչ միայն հայ, այլև համաշխարհային գրականության ծիրում: Այն մտահղացվել է իբրև գրական-փիլիսոփայական-

[73] **Իսահակյան** 1977, 296:

[74] Տե՛ս **ԳԱԹ, ԱԻՖ** 791–II և **ԳԱԹ, ԱԻՖ** 9–II, 5:

գաղափարաբանական-քարոզչական երկ՝ նոր վարդապետություն ներկայացնող «գրանդիոզ» և «հանրամարդկային» գիրք՝ բազմաբաղադրիչ բնագրային կառույց, որը պիտի կազմված լիներ տարասեռ առանձին մասերից և համազուգակցեր արձակ ու չափածո բանաստեղծություն, քարոզ, զրույց և այլաբնույթ այլ տեքստեր: Ուստի և այն չէր կարող ամփոփվել որևէ ժանրի սահմաններում: Նախագիծն ավարտին չի հասել, չկա երկի-գրքի ամբողջական, ավարտուն բնագիր, սակայն հնարավոր է բնագրային խճանկարի համալրում: «Յոթն օր ապատում, յոթն գիշեր անապատում» վերնագրով բնագրերը, դրանց և հեղինակի այլ ստեղծագործությունների բացահայտված ուղղակի և անուղղակի առնչությունները հիմք են տալիս ենթադրելու, որ առնչությունների շրջանակն ավելի լայն է և կարող է ներառել Իսահակյանի տպագիր և անտիպ ժառանգության այլ նմուշներ: Նախագիծը մտահղացման ու իրականացման տևական ընթացքում փոփոխվել է հեղինակի փիլիսոփայական-գեղագիտական որոնումներին զուգահեռ, բայց պահպանել է իր առանցքային նշանակությունը: Եվ ուրեմն՝ «Յոթն օր ապատում, յոթն գիշեր անապատում»-ի հետագա ուսումնասիրությունը կարևոր է Ավետիք Իսահակյանի անհատականությունը համակողմանիորեն հասկանալու, նրա հայտնի ու անհայտ որոշ ստեղծագործությունների համատեքստն ուրվագծելու, դրանք նորովի ընթերցելու, արժևորելու առումով:

## ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

**Աղբիւր** 1897, օգոստոս-սեպտեմբեր, NN 8–9, Թիֆլիս, էջ 285–286:

**Ավետիսյան Ա.** 1975, Նորահայտ էջեր Ավ. Իսահակյանի ժառանգությունից, Սովետական գրականություն, N 9, Երևան, էջ 103–104:

**Ե. Չարենցի անվան գրականության և արվեստի թանգարան, Ավ. Իսահակյանի ֆոնդ (ԳԱԹ, ԱԻՖ)** 1–II բ, 3–II, 8-I, 9–II, 254-II, 791–II:

**Զաքարյան Մ.** 1999, Ավետիք Իսահակյանի «Հիշատակարանը», Երևան, «Նահապետ» հրատ., 312 էջ:

**Իսահակեան Աւ.** 1898, Երգեր ու վէրքեր, Աղէքսանդրապօլ, տպ. Գէորգ Ս. Սանոյեանցի, 64 էջ:

**Իսահակեան Աւ.** 1903, Բանաստեղծութիւններ, Բագու, տպ. Արօր, 126 էջ:

**Իսահակեան Աւ.** 1908, Երգեր ու վէրքեր, Թիֆլիս, տպ. Հերմէս, 287 էջ:

**Իսահակյան Ավետիք** 1973, Երկերի ժողովածու, հ. առաջին, Երևան, «Հայաստան» հրատ., 463 էջ:

**Իսահակյան Ավետիք** 1977, Հիշատակարան, Երևան, «Սովետական գրող» հրատ., 471 էջ:

**Իսահակյան Ավետիք** 2003, Երկերի լիակատար ժողովածու, հ. 1, Երևան, ՀՀ ԳԱԱ «Գիտություն» հրատ., 847 էջ:

**Իսահակյան Ավետիք** 2011, Երկերի լիակատար ժողովածու, հ. երկրորդ, Երևան, ՀՀ ԳԱԱ «Գիտություն» հրատ., 627 էջ:

**Իսահակյան Ավետիք** 2008, Երկերի լիակատար ժողովածու, հ. չորրորդ, Երևան, ՀՀ ԳԱԱ «Գիտություն» հրատ., 731 էջ:

**Իսահակյան Ավետիք** 2014, Երկերի լիակատար ժողովածու, հ. հինգերորդ, Երևան, ՀՀ ԳԱԱ «Գիտություն» հրատ., 992 էջ:

**Իսահակյան Ավետիք** 2020, Երկերի լիակատար ժողովածու, հ. տասներեքերորդ, Երևան, «Էդիթ Պրինթ» հրատ., 720 էջ:

**Իսահակյան Ա.** 2000, Ավետիք Իսահակյան, գիտական կենսագրություն, գիրք առաջին, Երևան, ՀՀ ԳԱԱ «Գիտություն» հրատ., 601 էջ:

**Իսահակյան Ա.** 2000, Իսահակյանի խոհական աշխարհի ձևավորումը և Նիցշեի վարդապետությունը, Երևան, Պատմա-բանասիրական հանդես, N 1, էջ 51–68:

**Ինճիկյան Ա.** 1977, Ավետիք Իսահակյան, Երևան, «Սովետական գրող» հրատ., 257 էջ:

**Մուշեղյան Ա.** 1983, Ավետիք Իսահակյան: Վաղ տարիներ (1875–1898), Երևան, «Սովետական գրող» հրատ., 296 էջ:

**Նիցշե Ֆրիդրիխ** 2015, Այսպես խոսեց Զրադաշտը, Երևան, «Անտարես» հրատ., 612 էջ:

**Սովետական գրականություն** 1975, N 9, Երևան, էջ 107–109:

**Վարդանյան Ա.** 2006, Ավ. Իսահակյանի անտիպ էջերից, Երևան, Գրականագիտական հանդես, Ա(Ե), էջ 233–241:

**Տարազ** 1897, 28 սեպտեմբերի, N 37, Թիֆլիս, էջ 577–578:

**Nietzsche Friedrich** 1907, Also sprach Zarathustra: Ein Buch für Alle und Keinen, Leipzig, C. G. Naumann, 510 Seiten.

## «ВСЕЧЕЛОВЕЧЕСКИЙ» И «ГРАНДИОЗНЫЙ» ТВОРЧЕСКИЙ ПРОЕКТ АВЕТИКА ИСААКЯНА

САРКИСЯН М.

### Резюме

***Ключевые слова:*** творческий проект, философская доктрина, модель вселенная-человек, эскиз концепции, многокомпонентная структура, контекст произведения, «Семь дней среди людей, семь ночей в пустыне».

Творческий проект Аветика Исаакяна «Семь дней среди людей, семь ночей в пустыне» – исключительный в своем роде не только в армянской, но и мировой литературе. Он был задуман как литературно-философско-

идеолого-проповедническое произведение, «грандиозная» и «всечеловеческая» книга, представляющая новое учение, как многокомпонентная оригинальная структура, которая должна была состоять из отдельных частей, сочетающих в себе прозу и стих, проповедь, сказание и иные тексты. Поэтому он не вписывался ни в один жанр. Проект не закончен, полного, завершенного оригинала книги нет, но есть возможность дополнить текстовую мозаику. Тексты под названием «Семь дней среди людей, семь ночей в пустыне», прямые и косвенные связи между ними и другими произведениями автора дают основания предположить, что диапазон родства шире и может включать в себя другие образцы изданного и неизданного наследия Исаакяна. Проект редактировался на стадии замысла и его реализации параллельно философско-эстетическим исканиям автора, но при этом сохранил свое ключевое значение. Таким образом, изучение проекта «Семь дней среди людей, семь ночей в пустыне» важно в плане всесторонней оценки личности Аветика Исаакяна, очерчивания контекста ряда известных и неизвестных произведений писателя, их перечитывания и нового осмысления.

## THE GRAND CREATIVE PROJECT BY AVETIK ISAHAKYAN FOR "ALL MANKIND"

SARGSYAN M.

### Summary

***Key words:*** creative project, philosophy-doctrine, universe-human model, concept sketch, multi-component structure, context of the work, "Seven Days in the Desert, Seven Nights in the Desert".

Avetik Isahakyan's creative project "Seven Days in the Desert, Seven Nights in the Desert" is exceptional in its kind not only in Armenian, but also world literature. It was conceived as a literary-philosophical-ideology-preaching work, a a grand book "for all mankind". It was meant to present a new doctrine, a structure consisting of separate parts, combining prose and verse, sermon, legend and various other texts. Hence, it couldn't fit into any genre.

The project is not finished, there is no complete original of the book, but there is a possibility to fill up the text mosaic. The texts titled “Seven Days in the Desert, Seven Nights in the Desert” and direct and indirect links between them and other works by the author give reason to believe that the range of kinship is broader and may include other samples of the published and unpublished heritage of Isahakyan. The project was edited both at the stage of conception and realization in parallel with the writer's search of philosophical and aesthetic interpretations of his ideas, though he never abandoned the idea of the key importance of the work. Thus, the study of “Seven Days in the Desert, Seven Nights in the Desert” is essential for acquiring comprehensive evaluation of Avetik Isahakyan’s personality, outlining the context of some of his known and unknown works, re-reading and re-interpreting them anew.

**ԿԱՐԻՆԵ ԱՌԱՔԵԼՅԱՆ***
*Բանասիրական գիտությունների թեկնածու*
*ՀՀ ԳԱԱ լեզվի ինստիտուտ*
karine.arakelyan.2016@mail.ru
DOI: 10.54503/1829-4073-2022.3.218-232

# ՄԻՍԱՔ ՄԵԾԱՐԵՆՑԻ ԱՆԳԼԵՐԵՆԻՑ ԿԱՏԱՐԱԾ ՉԱՓԱԾՈ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԼԵԶՈՒՆ

***Բանալի բառեր՝*** թարգմանություն, բնագիր, հեղինակ, թարգմանիչ, լեզու, խոսք, ոճ:

**Ներածություն**

Դարեր ի վեր թարգմանությունը եղել և մնում է գիտության և արվեստի չափազանց կարևոր մի բնագավառ: Ինչպես դիպուկ է նկատել ամենայն հայոց բանաստեղծ Հովհաննես Թումանյանը. «Թարգմանությունը ապակու տակ դրած մի վարդ է. գրեթե անկարելի է, որ թարգմանիչը տա բնագրի հարազատ բույրն ու հրապույրը: Սակայն միշտ պահանջելի է, որ նա հավատարիմ մնա գործի մտքին և հասկանալի տա ընթերցողին»:[1]

405 թ.-ին հայոց գրերի գյուտով սկզբնավորվեց հայ մատենագրությունը, իսկ հինգերորդ դարը դարձավ հայ գրականության ոսկեդարը: Գրականությունը սկսում է զարգանալ երկու ուղղությամբ՝ ինքնուրույն ու թարգմանական, և, կարելի է ասել, նախ և առաջ թարգմանական: Առաջինը թարգմանվում է Գիրք գրոց Աստվածաշունչը, այս թարգմանությունն իր կատարելության համար հետագայում պիտի կոչվեր «թագուհի թարգմանութեանց», ապա նաև հոգևոր-եկեղեցական բազմաթիվ այլ գրքեր: Երկրում ծավալվում էր թարգմանական շարժում: Սահակ Պարթևը, Մեսրոպ Մաշտոցը և իրենց աշակերտները պատմության մեջ հայտնի են Թարգմանիչներ անվամբ, որոնց սրբադասել է Հայաստանյայց Առաքելական Սուրբ Եկեղեցին և նրանց պատվին տոներ սահմանել:

---

* *Հոդվածը ներկայացվել է 28.10.21, գրախոսվել է 28.10.21, ընդունվել է տպագրության 01.12.22:*

[1] **Թումանյան** 1969, 38:

Սուրբ Թարգմանիչների սկսած գործը շարունակվել է միշտ և բոլոր ասպարեզներում, բացառություն չէ գեղարվեստական գրականությունը: Անվանի գրողներ, բանաստեղծներ, թարգմանիչներ հաճախ են թարգմանել գեղարվեստական բարձրարժեք ստեղծագործություններ՝ հայ ընթերցողին հաղորդ դարձնելով համաշխարհային գրականության գոհարներին իրենց մայրենի լեզվով: Բավական է հիշել Թումանյանին, Սևակին, Չարենցին, Սահյանին, Ջորյանին և այլոց:

***Անգլերենից կապարած չափածո թարգմանությունների լեզուն***

Թարգմանական արվեստին անմասն չի մնացել և գեղարվեստական գրականության ասպարեզում իր ավանդն է ներդրել նաև XX դարասկզբի արևմտահայ ականավոր քնարերգու Միսաք Մեծարենցը:

Պետք է նշել, որ Մեծարենցը թարգմանություններ սկսել է կատարել պատանեկան տարիներից՝ գրական ասպարեզում առաջին քայլերին զուգընթաց: Թարգմանել է հանրաճանաչ հեղինակների՝ Չոսերի, Կիպլինգի, Փիքոքի, Ֆիլդի, Ուայլդի, Մամին-Սիբիրյակի և այլոց գործերը՝ ինչպես արձակ, այնպես էլ չափածո: Այստեղ ուզում ենք անդրադառնալ չափածո թարգմանություններին, հատկապես դրանց լեզվական առանձնահատկություններին:

Միսաք Մեծարենցի թարգմանած առաջին բանաստեղծությունը XIV դարի անգլիացի անվանի բանաստեղծ և արձակագիր Ջեֆրի Չոսերի «Եռանգն» է: Այն առաջին անգամ տպագրվել է 1905 թ. մայիսին «Մասիս» շաբաթական հանդեսում: Այս թարգմանությանը Մեծարենցը կցել է նախաբան, որը, կարելի է ասել, լույս է սփռում այն հարցի վրա, թե ինչու է թարգմանվել հատկապես այս բանաստեղծությունը: Թարգմանիչը նշում է, որ Չոսերի այս եռանգը իրեն հիշեցնում է. «գրեթե իրեն ժամանակակից մեր սիրերգակներուն բանաստեղծությունները՝ սիրային զգացումի միևնույն կրակովը վառված...»[2]:

Բանաստեղծը նկատի ունի միջնադարյան հայ տաղերգուներին՝ Հովհաննես և Կոստանդին Երզնկացիներին, Հովհաննես Թլկուրանցուն, Մկրտիչ Նաղաշին, Գրիգորիս Աղթամարացուն և այլոց, որոնց քնարերգությունը մեր մշակութային ժառանգության անգին գանձերից է[3]:

Բնագրին հարազատ մնալով հանդերձ՝ Մեծարենցը բնագրին ցուցաբերել է բավական ազատ մոտեցում՝ սկսյալ վերնագրից, ապա նաև բանաստեղ-

---

[2] **Մեծարենց** 1981, 293: Այսուհետև այս գրքից կատարվող մեջբերումների էջերը կնշվեն շարադրանքին կից՝ փակագծերի մեջ:

[3] Տե՛ս Հայ հին և միջնադարյան քնարերգություն 1987, 255:

ծության կառուցվածքից ու լեզվից: Թարգմանված առաջին բառը՝ այսինքն բանաստեղծության վերնագիրը եզրույթ է: Անգլերեն վերնագիրը՝ Triple Roundel, որն, ինչպես նշում է Մեծարենցը, նույն ռոնդոն է և բառացի նշանակում է եռակի ռոնդել, թարգմանվում է եռանգ, այսինքն կատարվել է եզրույթի թարգմանություն, և հեղինակը փորձել է միջազգային տերմինը հայացնել: Այս բառն, ամենայն հավանականությամբ, հեղինակային նորակազմություն է: Ռոնդոն «բանաստեղծության կառուցման կայուն ձև է...հենվում է որոշ տողերի կրկնության և ամբողջ բանաստեղծության մեջ միայն երկու հանգի օգտագործման վրա: Սկիզբ է առել միջնադարյան ֆրանսիական պոեզիայում»[4]:

Եռանգը բարդ բառ է՝ կազմված եռ և անգ բաղադրիչներից: Եռ-ը բարդությունների բաղադրիչ է «երեք նշանակությամբ, իսկ անգ (անկ) արմատը ունի տարբեր իմաստներ»: Մասնավորապես, այն նշանակում է նաև հանգ (յ+անգ): Հրաչյա Աճառյանը նշում է. «յանգաւոր չափաբերեալ գրուածք, որ յանգ ունի»[5]: Այսպիսով՝ եռանգ նշանակում է երեք հանգ ունեցող ոտանավոր:

Ինչպես արդեն նշեցինք, ռոնդոն ունի կայուն կառուցվածք: Չոսերի ռոնդոն բաղկացած է տասներկու տողից. առաջին երեք տողերը նույնությամբ կրկնվում են բանաստեղծության վերջում, առաջինը և երկրորդը՝ նաև վեցերորդ և յոթերորդ տողերում: Ստացվում է, որ տասներկու տողի մեջ առաջին և երկրորդ տողերը կրկնվում են երեք, իսկ երրորդը՝ երկու անգամ:

Մեծարենցն այստեղ ցուցաբերել է բավական համարձակ մոտեցում՝ տասներկու տողանոց ռոնդոն թարգմանելով տասը տողով, ինչը նրան հնարավորություն է տվել խուսափելու կրկնություններից և շատ ավելի խտացնելու ասելիքը: Առաջին տողը՝ «Երկու աչքերդ պիտի սպաննեն զիս մեկն» (293), կարելի է ասել, արտահայտում է բանաստեղծության հիմնական գաղափարը, որ թարգմանիչը կրկնել է վեցերորդ և տասներորդ տողերում, իսկ երկրորդ և երրորդ տողերը՝ «Իրենց գեղին ալ՛ չեմ կրնար դիմանալ, Սլաքն անոնց անցավ սրտիս իմ մեջեն» (293), որոնք փաստացի բացահայտում են առաջինի ենթաշերտերը, չի կրկնել ընդհանրապես: Փոխարենն ավելացրել է սեփական իններորդ տողը, որը ոչ միայն շեշտել է բանաստեղծությանը հուզական լիցքերը, այլև տրամաբանական շարունակությունն ու ամբողջացումն է նախորդ յոթերորդ ու ութերորդ տողերի.

Հավատարիմ ըզքեզ ես միշտ կը կարծեմ,

---

[4] **Ջրբաշյան, Մախչանյան** 1980, 268–269:

[5] **Աճառյան** 1971, 197:

Ըլլաս կյանքիս կամ մահվանս տիրուհին.

Քանզի մահես վերջն ալ սերըդ պիտ' լսեմ (293):

Այս տողերի թարգմանության մեջ ևս առկա են հետաքրքիր նրբերանգներ: Queen բառը Մեծարենցը թարգմանել է ոչ թե թագուհի, այլ տիրուհի բառով: Այս բառերն ինչ-որ իմաստով հոմանիշ են, քանի որ տիրուհի ևս կարող է նշանակել իշխող կին, թագավորի կին, թագուհի, սակայն տիրուհի բառը շատ ավելի բազմաշերտ է և ներառում է իմաստներ, որոնք առավել քան համահունչ են բանաստեղծության բովանդակությանը: Ի թիվս այլ իմաստների, այն նշանակում է «Մեկի՝ մի բանի վրա մեծ ազդեցություն ունեցող կին, մեկի հիացմունքի՝ պաշտամունքի առարկա հանդիսացող կին»[6]:

Ինչպես տեսնում ենք, այսպիսի թարգմանությունը միանգամայն ճշգրիտ է արտահայտում քնարական հերոսի հոգեվիճակը, և խոսքը շահում է բանաստեղծական առումով: Ճիշտ է նկատվել, որ «բառական սխալներ մեկ անգամ չէ, որ հանդիպել են ամենաանվանի թարգմանիչների գործերում, և այնուամենայնիվ նրանց թարգմանությունները շատ ավելի գեղարվեստական և ուրեմն հավաստի են, քան այն մեծաթիվ թարգմանությունները, որտեղ յուրաքանչյուր բառ թարգմանված է մեծագույն ճշգրտությամբ»[7]:

«That ye be of my life and death the queen…»[8]. «Կյանքիս և մահվանս». թարգմանության մեջ չի պահպանվել *և* շաղկապը, այլ դարձել է *կամ*, որը համապատասխանում է անգլերենի or շաղկապին: Դարձյալ առկա են նրբերանգային տարբերություններ: Երկու դեպքում էլ շաղկապները համադասական են և կապակցում են համազոր անդամներ՝ կյանքը և մահը: Բնագրում and (և) շաղկապը շեշտում է այս հասկացությունների միասնության գաղափարը և երկու դեպքում էլ նույն թագուհու գոյությունը: Թարգմանության մեջ շեշտվում է այս երկու հասկացությունների՝ միմյանցից մեծ տարբերություն չունենալու գաղափարը և երկուսում էլ սրտի մեկ ու միակ տիրուհու գոյությունը, ինչը Մեծարենցը լավագույնս է արտահայտում արդեն հաջորդ՝ իր ավելացրած տողով. «Քանզի մահես վերջն ալ սերըդ պիտ' լսեմ» (293):

Չորրորդ և հինգերորդ տողերում կարդում ենք.

And but your word wol helen hastily

My hertes wounde, whyl that hit is grene…[9]

---

[6] **Աղայան** 1976, 1444–1445:

[7] **Чуковский** 1966, 291.

[8] **Chaucer** 1913, 121.

[9] **Chaucer** 1913, 121.

Green (կանաչ) նշանակում է թարմ, չսպիացած, երբ խոսքը վերքի մասին է, կամ ինչպես այստեղ՝ սրտին հասցված հարվածի: Այս բառն անգլերենում ունի մի շարք փոխաբերական իմաստներ, «որոշ կապակցություններում կորցնում է գույնի իր հատկանիշը՝ green table խաղաքարտի սեղան, green hom անփորձ անձնավորություն և այլն»[10]:

Հայերենում կանաչ բառն ունի թարմության, նորոգության իմաստը, սակայն որևէ կերպ չի առնչվում վերքի հետ, ուստի Մեծարենցն այն պարզապես փոխարինում է նորածականով և գրում.

Բառերըդ լոկ շուտով պիտի դարմանեն

Վերքը սրտիս, մինչ նոր է դեռ անիկա... (293):

Ընդհանուր առմամբ խոսելով այս բանաստեղծության թարգմանության մասին՝ պիտի նկատենք, որ չնայած թարգմանիչը ցուցաբերել է բավական ազատ մոտեցում, սակայն դրանից չեն տուժել ոչ իմաստային, ոչ գեղարվեստական կողմերն ու որակները: Այն, ինչ Չոսերը ցանկացել է ընթերցողին հաղորդել իր ռոնդոյով, ամբողջությամբ արտահայտում է Մեծարենցն իր բարձրակարգ թարգմանությամբ՝ տեղ-տեղ նույնիսկ ասելիքն ավելի խտացնելով ու հարստացնելով հուզական լիցքերով: «Թարգմանիչը արտահայտության արարիչն է,- գրում է հետազոտողը,- քանի որ դրա համար ունի իր սեփական նյութերը, որոնցից պիտի օգտվի՝ առանց որևէ ուղղորդման կամ կողմնակի օժանդակության: - «Իսկ սկզբնաղբյուրի հեղինակի արտահայտություննե՞րը»: Նա դրանք չի գտնելու իր մայրենի լեզվում, նա դրանք պետք է արարի»[11]:

Հաջորդ հեղինակը, որի չափածո ստեղծագործություններից երկուսը թարգմանել է Միսաք Մեծարենցը, ամերիկացի բանաստեղծ Էոժեն Ֆիլդն է, որը հայտնի է իր մանկական բանաստեղծություններով: Մեծարենցը թարգմանել է նրա «Փոքրիկ կապույտ տղան» և «Հոլանդական օրորը»: «Հոլանդական օրորն» առաջին անգամ տպագրվել է 1907 թ. «Ծաղիկ տղոց» հանդեսում: Խմբագրությունը թարգմանությանը կցել է հետևյալ ծանոթությունը. «Երիտասարդ բանաստեղծ Միսաք Մեծարենց մանկանց Ծաղիկին համար անգլերենէ թարգմանած է հետևյալ սիրուն քերթվածը, զոր հաճոյքով կը հրապարակենք» (427):

Պետք է նշել, որ Էոժեն Ֆիլդը գրել է մի քանի օրորներ՝ վերնագրերի միջոցով դրանք վերագրելով այս կամ այն ազգի, ինչպես՝ իրեական, հայկական

[10] **Բադիկյան** 1986, 76:

[11] **Федоров** 2002, 14.

և այլն: Հետաքրքրական է, որ այստեղ, մասնավորապես «Հայկական օրոր-րում» բացի վերնագրից չկա հայկականը ուղիղ կերպով հիշեցնող որևէ բառ կամ արտահայտություն, սակայն ուշադիր ընթերցումը կարող է բացահայտել հետաքրքիր մանրամասներ: Հատկապես այստեղ առկա է երեք ծառատեսա-կի անվանում, որոնք սերտ առնչություն ունեն հայի ու հայկականության հետ և ընթերցողին տեղափոխում են հայկական միջավայր. նշենին, թթենին և նռնենին: Այսպես.

And thaw shalt swing in an almond- tree,
With a flood of moonbeams rocking thee, -
A silver boat in a golden sea, -
My velvet love, my nestling dove,
My own pomegranate – blossom![12]

Մեծարենցի թարգմանած բանաստեղծությունը բնագրում վերնագրված է «Դանիական օրոր»: Նրա հերոսները հեքիաթային ձկնորսներ են, որոնք նա-վարկում են փայտե ոտնամանով և գնում ծովատառեխ որսալու: Այս ձկնատե-սակը շատ տարածված է Ատլանտյան օվկիանոսում, նույնիսկ Ատլանտյան օվկիանոսի հյուսիսային մասը կատակով անվանում են herring-pond, այ-սինքն՝ ձկնաբուծարան: Ե՛վ Դանիայի, և՛ Հոլանդիայի ափերը ողողում են Հյուսիսային ծովի ջրերը, ու գուցե այստեղ է պետք փնտրել թարգմանության մեջ մեկը մյուսով փոխարինելու գաղտնիքի բացատրությունը:

Թարգմանության մեջ Մեծարենցը առավելագույն չափով հարազատ է մնում բնագրին, թեև առկա են նաև ինչ-ինչ նրբերանգային տարբերություն-ներ: Փոքրիկ ձկնորսները նավարկում են փայտե կոշիկով: Անգլերեն shoe բառը Մեծարենցը թարգմանել է ոչ թե կոշիկ կամ ոտնաման, այլ մուճակ բա-ռով: Աղայանի բացատրական բառարանն այս բառը համարում է հնացած և բացատրում որպես «մի տեսակ ոտնաման, չուստ»[13]:

Անգլերենում shoe բառը նշանակում է կոշիկ, բայց ամերիկյան անգլերե-նում բացի կոշիկից ունի նաև մաշիկ իմաստը: Ֆիլդը ամերիկացի հեղինակ է, բանաստեղծության բովանդակությունն էլ հուշում է, որ խոսքը սովորական կոշիկի մասին չէ, և Մեծարենցը կատարել է խիստ հաջողված թարգմանութ-յուն՝ մի քանի հոմանիշներից ընտրելով այս դեպքի համար ճշգրիտ համար-ժեքը, և ասելիքը հայերենով փոխանցել նույնությամբ:

[12] **Field** 1896, 151.
[13] **Աղայան** 1976, 1038:

Ծեր լուսնի հարցին, թե ուր են գնում և ինչ են ուզում, փոքրիկ ձկնորսնե-րը պատասխանում են, որ եկել են ծովատառեխ որսալու: Ավելացնում են, որ ունեն ոսկե և արծաթե ցանցեր: Այս արտահայտությունը Մեծարենցը թարգ-մանել է «ցանցեր ոսկի և արծաթահյուս»՝ այսինքն ոսկի և արծաթ թելերով հյուսված, ինչը խոսքն ավելի տեսանելի է դարձրել:

And the wind that sped them all night long

Ruffled the waves of dewn[14]…

Այս երկատողը թարգմանված է.

Զանոնք վարող քաղցր հովիկն ալ գիշերային

Ցող ալիքները փոթփոթեց...(310):

Wind, որ նշանակում է քամի, թարգմանության մեջ դարձել է հովիկ, այ-սինքն *հով* գոյականն է փոքրացուցիչ-փաղաքշական ածանցով: Դրա հետ կի-րառված է նաև *քաղցր* մակդիրը, որը բացակայում է բնագրում: Ruffle բայը բազմիմաստ է ու նշանակում է նաև թեթևակի ալեկոծվել: Մեծարենցն այն թարգմանել է փոթփոթել բայով, որը նույնպես բազմիմաստ է, և նրա փոխա-բերական իմաստներից մեկն է. «Ալիքավորվել, ծփալ, կոհակներով՝ ալյակնե-րով պատվել»[15]:

Հպանցիկ ակնարկ նետելով այս բանաստեղծության թարգմանությանը՝ տեսնում ենք, որ Մեծարենցը դարձյալ հարազատ է մնում բնագրին՝ երբեմն ցուցաբերելով առավելագույն ճշգրտություն, երբեմն էլ ստեղծագործական մո-տեցում, ինչի արդյունքում խոսքը հագենում է նրբությամբ ու քնքշությամբ, ավելի ցայտուն է դառնում մանկան հոգուն այնքան հարազատ հեքիաթային գեղեցկությունը, և բանաստեղծությունը պատվում է մանկական վառ երևա-կայությանը խիստ բնորոշ երանգներով:

XX դարի առաջին կեսի գերմանացի փիլիսոփա, թարգմանիչ, մշակութա-բան Վալտեր Բենյամինը կարծում էր, որ «եթե բնագրում բովանդակությունն ու լեզվական ձևը որոշակի միասնություն են կազմում, ինչպես պտուղն ու կե-ղևը, ապա թարգմանության լեզուն իր բովանդակությունը կրում է ինչպես լայն ծալքերով մի արքայական պատմուճան»[16]:

Երևի այս համատեքստում կարելի է բացատրել այն հանգամանքը, որ Մեծարենցը չի թարգմանել բանաստեղծության վերջին մասը, որտեղ բա-ցատրվում են նախորդ խորհրդանշանական պատկերները, և ասվում, թե ինչ

[14] https://www.bartleby.com/360/1/71.html

[15] **Աղայան** 1976, 1524:

[16] **Հակոբյան** 2017, 160:

պետք է հասկանալ դրանք կարդալիս: Մասնավորապես, որ փայտե մուճակը փոքրիկի անվավոր մահճակալն է, այսինքն օրորի մի կարևոր բաղադրիչը և այլն: Ասվածից չի կարելի եզրակացնել, որ թարգմանությունը կիսատ է. այն անավարտ է և պատված է խորհրդավորությամբ, ինչը ստիպում է փոքրիկ ընթերցողին ինքնուրույն գտնել շատ հարցերի պատասխաններ ու բացահայտել գաղտնիքներ:

Էոժեն Ֆիլդի հաջորդ բանաստեղծությունը, որ թարգմանել է Մեծարենցը, վերնագրված է «Փոքրիկ կապույտ տղան»: Այն նույնպես առաջին անգամ տպագրվել է 1907 թ. «Ծաղիկ տղոց» հանդեսում: Այստեղ սկսյալ վերնագրից տեսնում ենք առավելագույն հարազատություն բնագրին, տեղ-տեղ անգամ բառացի, սակայն միանգամայն գեղարվեստական թարգմանություն, և միշտ առկա ստեղծագործական մոտեցում: Բանաստեղծությունը փոքրիկի կամ փոքրիկ կապույտ տղայի և նրա «անհայտ բացակայության» մասին է, ինչը զարմացնում է տղայի խաղալիքներին, որոնք պատվել են տարիների փոշով: Այս բանաստեղծությունը նմանատիպ թեմայով միակ բանաստեղծությունը չէ Էոժեն Ֆիլդի քնարերգության մեջ: Դրանցից մեկը նվիրված է հեռացող, անհետացող սրբին, որին քնարական հերոսը խնդրում է գտնել ու իրեն վերադարձնել իր կորսված զավակին:

O dear saint, that blessest men
With the grace of Christmas joy,
Soothe this heart with love again, -
Give me back my little boy![17]

Սերտ առնչություն կա այս երկու բանաստեղծությունների միջև: Երկուսում էլ բացակա է փոքրիկը, և այդ բացակայությունը խորը վիշտ է պատճառում նրա մերձավորներին, նույնիսկ անշունչ առարկաներին՝ խաղալիքներին:

«Փոքրիկ կապույտ տղան» բանաստեղծության մեջ Մեծարենցը հավանաբար կրկնությունից խուսափելու համար toy բառը մի դեպքում թարգմանել է խաղալիք, մի դեպքում՝ պուպրիկ: Պուպրիկ գոյականը, որ միայն արևմտահայերենում գործածական բառ է և չի օգտագործվում արևելահայերենում, ավելի ունի տիկնիկի իմաստ, թեև կարող է նշանակել նաև «երեխայի խաղալիք»[18]: Նշված հատվածում խոսքը խաղալիք զինվորի, շնիկի մասին է, ըստ

[17] **Field** 1986, 187.
[18] **Աղայան** 1976, 1235:

այդմ, կարելի է թարգմանել պուպրիկ բառով: Թարգմանության մեջ առկա են հետաքրքիր նրբերանգներ ևս.

But the little toy friends are true!

Aye, faithful to Little Boy Blue they stand,

Each in the same old place...[19]

True բառը, որ հայերեն թարգմանվում է ճիշտ, ճշմարիտ, ունի նաև այլ իմաստներ և այստեղ նշանակում է հավատարիմ: Հաջորդ տողում առկա faithful բառը նախորդի հոմանիշն է: Մեծարենցն այս անգամ էլ է խուսափում կրկնությունից և հավատարիմ բառը կիրառում է միայն մեկ անգամ՝ faithful բառը թարգմանելիս՝ դրան նախորդող տողում գրելով. «Բայց բարեկամ պուպրիկները դեռ կը մընան», որը լիովին արտահայտում է տողի իմաստը՝ տիկնիկների հավատարմությունը: Հաջորդ տողի each բառը Մեծարենցը չի թարգմանում սովորական համարժեքով՝ յուրաքանչյուր կամ ամեն մի դերանուններով, այլ առօրյա-խոսակցական լեզվում չհանդիպող հին, գրքային մակբայով՝ անձնյուր:

Անչափ հետաքրքիր է բանաստեղծության վերջին քառատողի թարգմանությունը:

And they wonder, as waiting these long years through

In the dust of that little chair,

What has become of our Little Boy Blue

Since he kissed them and put them there.[20]

Առաջին տողը թարգմանված է գրեթե բառացի: Երկրորդ տողը բացակայում է, փոխարենը երրորդ տողը կրկնվում է մասնակի տարբերությամբ.

Եվ, մինչ հոն են, այսքան երկա՜ր, երկա՜ր ատեն,

Կը զարմանան, թե ու՞ր մնաց փոքրիկ Տըղան,

Թե ինչ եղավ մեր Պըզտիկ Կապույտ Տըղան,

Որ զիրենք հոն դըրավ, պաչիկ առավ, գընա՜ց (311):

Մեծարենցը դիմում է կրկնության, և միանգամայն բնական է, որ կրկնում է այն տողը, որի մեջ, կարելի է ասել, ամփոփված է բանաստեղծության բովանդակությունը՝ փոքրիկ տղայի խորհրդավոր բացակայությունը: Վերջին տողը թարգմանված է գրեթե բառացի՝ մի փոքր, բայց շատ էական տարբերությամբ. ամենավերջում ավելացել է մեկ բառ՝ գնաց: Այս բառը գուցե կարե-

[19] holyjoe.org/poetry/field4.htm

[20] holyjoe.org/poetry/field4.htm

լի է մեկնաբանել տարբեր կերպ և առաջանալու են բազմաթիվ հարցեր, որոնց դարձյալ չկա ուղիղ պատասխան, թեև կան հուշող տողեր, ինչպես.

Ու նիրհեց մեջն իր ճռնիկին.
Հոն երազեց խաղալիքներն իր անգին.
Ու՝ երազեն՝ հրեշտակի երգ մ'այս անգամ
Ըսթափեցուց մեր Պըզտիկ Կապույտ Մանչն հեք...(311):

Ամեն դեպքում գնաց բայն օգնում է ընթերցողին և թեկուզ դույզն չափով ցրում անորոշությունը, որ առկա է բնագրում: Ինչպես նկատում է հետազոտողը. «Արձակի թարգմանիչը ստրուկ է, բանաստեղծության թարգմանիչը՝ մրցակից»[21]:

Վերջին բանաստեղծությունը, որ անգլերենից թարգմանել է Մեծարենցը, անգլիացի բանաստեղծ, արձակագիր և քննադատ Թոմաս Լըվ Փիքոքի «Սիրո թաղումը» բանաստեղծությունն է: Այն առաջին անգամ տպագրվել է «Մասիս» հանդեսում 1907թ.: Այս ոտանավորը երեք քառատողից բաղկացած սիրային քնարերգության գողտրիկ մի նմուշ է: Թարգմանելիս նախորդների պես Մեծարենցը չի դավաճանել իր սկզբունքներին, հարազատ է մնացել բնագրին և չի մոռացել ստեղծագործական մոտեցման մասին:

„The Grave of Love”. այս վերնագիրը թարգմանված է «Սիրո թաղում»: Grave բառը հայերեն թարգմանվում է որպես դամբան, գերեզման, և թաղում բառը սրանց հոմանիշը չէ: Ուրեմն ինչու՞ է Մեծարենցը թարգմանել թաղում բառով: Պատասխանը տալիս է բնագրի ուշադիր ընթերցումը:

Բանաստեղծությունը խաբված սիրահարի հոգեկան տվայտանքների մասին է՝ ներկայացված այլաբերությունների միջոցով: Քնարական հերոսը փոս է փորում նոճու ստվերում և այնտեղ թաղում իր սիրո առարկայից ստացած խոստումները, ապա փոսը փակում է մամռոտ քարով ու շուրջը վարդից պսակ հյուսում: Այսպես ստեղծվում է սիրո դամբանը: Այսքանը Փիքոքը ներկայացնում է բանաստեղծության առաջին ութ տողերի մեջ՝ շատ սեղմ ու ազդեցիկ: Սակայն, ինչպես տեսնում ենք, այն ամբողջությամբ նկարագրում է գործողությունը, որի արդյունքն է սիրո դամբանը, այդ իսկ պատճառով Մեծարենցը վերնագիրը դարձրել է «Սիրո թաղումը»՝ նրան հաղորդելով շարժման ու գործողության հատկանիշներ, ինչը միանգամայն արդարացված է:

Առաջին քառատողի երրորդ և չորրորդ տողերում կարդում ենք.

And every pledge in earth I laid,

---

[21] **Жуковский** 1901, 833.

That erst thy false affection gave.[22]

Թարգմանությունը մոտ է բնագրին, սակայն ունի իմաստային և լեզվական տարբերություններ: Այստեղ Մեծարենցը, ինչպես նախորդ բանաստեղծության թարգմանության ժամանակ, դիմել է կրկնության՝ երրորդ և չորրորդ տողերում կրկնելով խոստումներ բառը՝ առավել ընդգծելով դրա դերն ու կարևորությունը խոսքաշարում: Այնուհետև բանաստեղծության չորրորդ տողից դուրս է թողել կեղծ որոշիչը, իսկ affection բառը չի թարգմանել իր իրական համարժեքներից որևէ մեկով՝ առերես սեր, սեթևեթանք, արհեստականություն, այլ թարգմանել է սեր: Արդյունքում ստացվել է հետևյալը.

Ու թաղեցի ես խոստումներըդ ես,

Խոստումներ՝ զոր մերթ տըվավ սերդ ինծի (309):

Քնարական հերոսը «թաղում» է խոստումները, այսինքն բաժանվում է դրանցից, փորձում մոռանալ, մինչդեռ դրանցով է ապրել տևական ժամանակ, գուցե շատ երկար, և միանգամայն պարզ է դրանց կարևորությունը սիրահարի համար: Այս խոստումներն, ըստ բնագրի, տրվել են կեղծ, թվացյալ սիրով, սեթևեթանքով, այսինքն չի մնում որևէ մութ անկյուն: Քնարական հերոսը խաբված է եղել և իր խաբված լինելը գիտակցել է շատ ավելի ուշ: Թարգմանության մեջ չկա այս որոշակիությունը: Սիրած աղջիկը տվել է խոստումներ, իսկ գուցե դրանք այն ժամանակ անկե՞ղծ են եղել, գուցե հետո՞ է ինչ-որ բան փոխվել, կամ գուցե ի սկզբանե՞ կեղծ են եղել: Հարցեր, որոնց պատասխանը չկա թարգմանության մեջ, և այն պիտի տա ընթերցողը: Ստեղծված կացությունը ելք չի ենթադրում, սակայն ի տարբերություն հեղինակի, թարգմանիչը հույսի գրեթե աննշան արահետ է թողնում:

Վերջին բանատան մեջ տեսնում ենք ծաղիկների և նոճու հակադրությունը: Սրանք նաև խորհրդանիշներ են. ծաղիկներն՝ աղջկա սիրո, անզոր ու տկար, որոնք մեկ օրվա կյանք անգամ չեն ունենում, այլ մեռնում են մայրամուտից էլ առաջ, իսկ նոճին՝ սիրահարի ցավի, որը խորն է ու դժվարակիր, բայց և հայտնի է, որ տառապանքն ունի մաքրող ու զորացնող հատկություն. այսպես է նաև այս դեպքում, երբ նոճին դիմակայում է տարիների փորձությանը.

Frail as thy love, the flowers were dead  
Ere yet the evening sun was set:  
But years shall see the cypress spread,

[22] https//englishverse.com/poems/the_grave_of_love.

Immutable as my regret.[23]

Immutable ածականը, որ նշանակում է անփոփոխ, անփոփոխելի, Մեծարենցը թարգմանում է անսասան բառով, որը փոխաբերական մակդիր է և թվում է մի քիչ անսովոր կամ անհարիր *ցավ* բառի համար, սակայն էլ ավելի է խորացնում հակադրությունը և մակադրյալին հաղորդում յուրահատուկ վեհություն ու գեղեցկություն, ինչպես լինում է ցավը արժանապատվորեն կրող ուժեղ անհատի պարագայում.

Մեռան ծաղիկներն՝ անզոր՝ սիրույդ պես,

Արևմարքեն ալ առաջ իրիկվան.

Սակայն՝ իմ ցավիս նըման անսասան

Նոճին՝ տարինե՛րն են հանդիսատես (309):

Ուշագրավ նմանություն կա Մեծարենցի թարգմանած այս և Մեծարենցի հեղինակած «Մեռելոց» բանաստեղծությունների միջև: «Մեռելոցն» այն եզակի բանաստեղծություններից է, որոնք ամբողջությամբ այլաբանություն են՝ սկսյալ վերնագրից մինչև վերջին տողը: Քնարական հերոսը մեկը մյուսի հետևից բաժանվում է իր սերերից: Այստեղ սիրած էակներին մարմնավորում են վարդերը: Սպիտակ վարդը սառչում է ձմռանը, դամասկյան վարդը նվաղում, աշնան շունչը հարվածում է դեղին վարդին: «Վարդերից» մնում է միայն հիշատակ, խորը կսկիծ ու տվայտանք: Հերոսն ապրում է թախծոտ հուշերով, սակայն, ի վերջո, անհնար է անընդհատ տրվել հիշողությունների, և նա ճիգ ու ջանք է գործադրում մոռանալու անցյալը, ու ծնվում է վերջին այլաբանական պատկերը.

Ու մըտածումս ալ, հ՛եք նժդեհ քահանա,

Խաչ հանելով կ'ըսե բառեր լուսեղեն,

Ու նայվածքս կը բաժնըվի երբ հողեն,

Հոգիս զանոնք անգա՛մ մըն ալ կը մոռնա...(101):

Լուսեղեն խոսքերն ի զորու չեն ամոքելու կորստի ցավը, մոռացնել տալու անցյալը: Իսկ «անգա՛մ մըն ալ» կապակցությունը պարզորոշ ցույց է տալիս, որ սա հերթական փորձն է սեփական անձից փախչելու, որը, ինչպես մյուս բոլորը, դատապարտված է ձախողման:

### ***Եզրակացություններ***

«Թարգմանիչները լուսավորության փոստային ձիերն են»[24], - մի առիթով ասել է ռուսականավոր բանաստեղծ Ալեքսանդր Պուշկինը: Ինչպես կարելի է

[23] https//englishverse.com/poems/the_grave_of_love.

եզրակացնել այս համառոտ քննությունից, արևմտահայ քնարերգու Միսաք Մեծարենցը լուրջ հայտ է ներկայացրել իբրև թարգմանիչ, թեև ցավոք չի հասցրել շատ գործեր թարգմանել: Թարգմանել սկսել է վաղ հասակից, թարգմանել է և՛ արձակ, և՛ չափածո: Չափածո թարգմանությունները կատարել է անգլերենից՝ դրսևորելով այդ լեզվի հրաշալի իմացություն: Աչքի է ընկել բացառիկ լեզվամտածողությամբ և լեզվազգացողությամբ, բնագրին հարազատ մնալով՝ ցուցաբերել է նրբազգաց բանաստեղծին հատուկ ստեղծագործական մոտեցում: Լիովի օգտվել է հայերենի ընձեռած անսպառ հնարավորություններից, ընտրել ճշգրիտ ու տեղին համարժեքներ, տեղ-տեղ ասելիքն ավելի խորացրել ու հարստացրել հուզական լիցքերով՝ բանաստեղծի իր տաղանդն ամբողջությամբ ի սպաս դնելով թարգմանչի առաքելության հաջողությանը:

## ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

**Աղայան Է.** 1976, Արդի հայերենի բացատրական բառարան, «Հայաստան», Երևան, 1616 էջ:

**Աճառյան Հ.** 1971, Հայերեն արմատական բառարան, հ. 1, Երևանի համալսարանի հրատ., Երևան, 698 էջ:

**Բադիկյան Խ.** 1986, Ժամանակակից հայերենի դարձվածային միավորները, Հայկական ՍՍՀ ԳԱ հրատ., Երևան, 356 էջ:

**Թումանյան Հ.** 1969, Երկերի ժողովածու, հ. 4, «Հայաստան», Երևան, 488 էջ:

**Հակոբյան Ա.** 2017, Վալտեր Բենյամին. Թարգմանչի պարտքը, «Ջահուկյանական ընթերցումներ» միջազգային գիտաժողովի զեկուցումների ժողովածու, «Գիտություն» հրատ., Երևան, 390 էջ:

Հայ հին և միջնադարյան քնարերգություն 1986, «Լույս», Երևան, 464 էջ:

**Մեծարենց Մ.** 1981, Երկերի լիակատար ժողովածու, Հայկական ՍՍՀ ԳԱ հրատ., Երևան, 456 էջ:

**Ջրբաշյան Է., Մախչանյան Հ.** 1980, Գրականագիտական բառարան, «Լույս», Երևան, 352 էջ:

**Жуковский В.** 1901, Сочинения в стихах и прозе. под. ред. П.А. Ефремова-, изд. И. Глазунова, Санкт-Петербург, 1007 с.

**Пушкин А.** 1986, Сочинения в трех томах, т. третий, изд. «Художественная литература», Москва, 528 с.

**Федоров А.** 2002, Основы общей теории перевода (лингвистические проблемы), изд. «Филология три», Санкт-Петербург, 416 с.

[24] **Пушкин** 1986, 490.

**Чуковский К.** 1966, Собрание сочинений в шести томах, т. третий, изд. «Художественная литература», Москва, 839 с.

**Chaucer G.** 1913, The Complete Works of Geoffrey Chaucer, London, a.o., at the Clarendon Press, 732 p.

**Field E.** 1986, Second Book of Verse by Eugene Field, New York, Charles Scribner's Sons, 260 p.

https//englishverse.com/poems/the_grave_of_love.

holyjoe.org/poetry/field4. htm.

https://www.bartleby.com/360/1/71. html-.

## ЯЗЫК ПЕРЕВОДОВ МИСАКА МЕЦАРЕНЦА ИЗ АНГЛИЙСКОЙ ПОЭЗИИ

АРАКЕЛЯН К.

### Резюме

***Ключевые слова:*** перевод, оригинал, автор, переводчик, язык, речь, стиль.

Перевод всегда был одним из лучших способов межкультурного общения народов. Многие представители армянской культуры внесли свой вклад в искусство перевода, в их числе известный западноармянский поэт начала XX века Мисак Мецаренц, переводивший как прозу, так и поэзию.

Статья посвящена исследованию лингвистических особенностей переводов Мецаренца из английской поэзии, в частности, ряда поэтических произведений Чосера, Филда и Пикока. В своих переводах Мецаренц оставался близок к оригиналу, избегал дословности, но при этом проявлял творческий подход для достижения эмоционального накала.

## THE LANGUAGE OF MISSAK METSARENTS' VERSE TRANSLATIONS FROM ENGLISH

ARAKELYAN K.

### Summary

***Key words:*** translation, original, author, translator, language, speech, style.

Translation has always been one of best ways of intercultural communication between peoples. Many representatives of Armenian culture have contributed to the art of translation, including the famous Western Armenian poet of the early twentieth century, Missak Metsarents, who translated both prose and poetry.

The article is devoted to the study of the linguistic features of Metsarents' translations from English poetry, in particular a number of Chaucer's, Field's and Peacock's poetic works. In his translations Metsarents remained close to the original, avoided verbatim, but at the same time showed a creative approach to achieve emotional intensity.

# ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐ
# PUBLICATIONS

**NAIRA GINOSYAN**
*PhD in History*
*YSU, Chair of Turkish studies, Assistant Professor*
*Institute of History NAS RA, Researcher*
naira.ginosyan@ysu.am

## CORRESPONDENCE BETWEEN ARSHAK SAFRASTYAN AND THE FOREIGN OFFICE REGARDING REPARATIONS OF THE "ABANDONED PROPERTIES" OWNED BY ARMENIANS AND LOCATED IN THE REPUBLIC OF TURKEY

The articles of the Treaty of Sevres, in addition to defining responsibility for war crimes, also determined material responsibility for the dispossession of the Armenian population of the Ottoman Empire by committing genocide. Thus, Article 144 of the Treaty of Sèvres obliges Turkey not only to recognize the Ottoman government's "Abandoned Property" law of 1915 and its amendments, which legitimized the policy of mass dispossession of Genocide-affected Western Armenians, but also prohibits the adoption of such laws in the future[1].

The importance of this article is extremely significant from the point of view of restoring the rights of the Armenian population victimized through the genocide, to their own property. This article also defined specific mechanisms by which the ownership rights of Western Armenians to their property would be restored.

[1] Հայաստանը միջազգային դիվանագիտության և սովետական արտաքին քաղաքականության փաստաթղթերում (1828–1923) 1972, 678:

According to the article, the Turkish government was obliged to contribute as much as possible so that the foreign citizens of the Empire, exiled or migrated after January 1, 1914 due to the fear of the atrocity, returned to their places of residence[2].

The Ottoman government accepted that only in case the immovable or movable properties belonging to the mentioned citizens of the Empire or their communities are found; no matter in whose hands they might be, they should be returned to the legitimate owners of the properties, i.e. the Western Armenians as soon as possible. Moreover, the returning properties had to be freed from any debts with which they might have been burdened by the new owners and should be returned without any compensation to the new owners and users[3].

The article 288 of the Treaty of Sevres stipulated that the property, rights and interests of former Turkish subjects who acquired citizenship of an allied country or a new state in Turkey should be returned to them in their current state. This meant that depriving Western Armenians of their citizenship of Turkey, or their acquisition of citizenship of a new state, could not be a basis for the Turkish authorities to deprive them of their property, rights or interests[4].

However, shortly before the signing of the Lausanne Agreement, on April 15, 1923, a law on “abandoned property” was passed in Turkey, by which all the property of Armenians was confiscated, regardless of all the motives and circumstances that had forced them to leave the country. The possibility of protecting their property rights was denied even through letters of guarantee. All the credentials issued to Armenians were declared invalid[5].

In order not to apply the provisions of the Lausanne Treaty on non-Muslim minorities and to exclude the possibility of intervention by the League of Nations, the Turkish government decided to deprive the refugee Armenians of their Turkish citizenship. For decades, Turkey has violated the articles of the Treaty of Lausanne on the protection of the rights of non-Muslim minorities, including Armenians, which should be considered a manifestation of the forced deportation

[2] Հայաստանը միջազգային դիվանագիտության և սովետական արտաքին քաղաքականության փաստաթղթերում (1828–1923) 1972, 679:

[3] Հայաստանը միջազգային դիվանագիտության և սովետական արտաքին քաղաքականության փաստաթղթերում (1828–1923) 1972, 679:

[4] **Մարուքյան** 2014, 104:

[5] **Բարսեղով** 1999, 14:

of 30,000 to 40,000 Armenians, who survived the massacres of 1929–1930, to Syria and illegal confiscation of the properties of the Armenian community in Turkey[6].

In his book "The International Community and the Great Powers Facing the Armenian Question" published in Paris in 1926, legal internationalist A. Mandelstam, the author of the initial version of the Russian-Turkish treaty on Armenian reforms in 1914, stated that the powers had to apply certain pressures on the Turkish authorities in order to force them to fulfill their obligations related to the protection of the rights of non-Muslims and, in particular, Armenians. Mandelstam offered options for such pressure: the threat of an economic blockade against Turkey or the decision of the League of Nations not to recognize it as a state, which, in his opinion, would be enough to bring the Kemalites to their knees[7].

In this matter, the states that signed the Lausanne Treaty are to blame for allowing Turkey to violate its obligations. The additional obligations assumed by Turkey to protect the rights of the non-Muslim population and particularly the Armenians under the Treaty of Lausanne have not lost their power yet. So, currently, the Republic of Armenia could call on the countries that signed the Lausanne Treaty to force Turkey to fulfill its obligations under articles 38–44 regarding the protection of the rights of non-Muslims, even the demand of one of the member states of the Treaty would be sufficient. However, in the created geopolitical situation, the Republic of Armenia opened the so-called "era of peace".

The special ambassadors of Armenia and Turkey meet and record that the land borders should be opened for the 3rd countries and air freight should be carried out. The authorities of the Republic of Armenia consider this a diplomatic achievement. They declare that they cannot compete with as large a country as Turkey in terms of military, economic or other issues, and therefore, they should have good relations with Turkey which in its place will lead to good relations with Azerbaijan. However, we believe, that this is a fundamentally wrong opinion. When Turkey declares that Armenian-Turkish relations should develop without preconditions, it sounds like an obvious lie, because on the other hand it declares

[6] **Թորիկեան** 1976, 138:

[7] **Մարության** 2014, 144:

that relations with Armenia will be established when the latter recognizes Artsakh as part of Azerbaijan. This is the most important prerequisite. In the process of improving Armenian-Turkish relations, the calls of the international community stem from their interests. They have their own benefit. What does Armenia gain here? Nothing. No third country will ever take care of our interests like we do and we have to do. Anyone welcoming this process seeks their own narrow interests.

Is it a problem of importance for the big states whether Shushi is under the jurisdiction of Armenia or Azerbaijan? Is it a big problem for them which territory of Armenia the Nakhichevan corridor will pass through? Moreover, is it important for the domineering states to care under whose control that corridor will operate? We believe not, because unfortunately, small problems are not visible in the big game. We should approach the issue from the interests of the statehood of our small country. As has happened many times before in our history, Armenia has turned into a theater stage of military operations of big states, where they tend to solve global problems.

In this case, the diplomatic skill does not prove to be reliable for getting your country out of the threat of becoming a theater totally. Does Armenia have such a threat? Of course it does. In fact, Armenia seems to have become a big corridor, a country that serves the third countries, and the interests of big states collide in here, though Armenia is not involved in all of this, as it performs the role of an observer. In the best case scenario, we will be lucky if our interests coincide with those of a superpower.

**№ 1**

**REPARATION CLAIMS DEPARTMENT**

Pleas quote c/1020$^{T}$/P.

Cornwell House,
Stamford Street
London S.E.L
28th October 1921

Sir,

With reference to your communication of the 15th October 1921, I have to inform you that upon further consideration it is regretted that the particulars lodged by you cannot be accepted for registration by this Department. By the terms of reference, the Grants Commission can only consider claims by British Nationals for

